# ԽՈՍՔ․ պիոներներին

Ն. ԶԱՐՅԱՆ

Բարեկամնե՛ր իմ պատանի,
Ականջ արեք բանաստեղծին
Սովետական Հայաստանի
Այս տոնական տարեդարձին։

Մենք հիմնեցինք մի նոր աշխարհ,
Օրենք մի սուրբ և իմաստուն։
Եվ չթողինք, որ դարեդար
Ստրկացներ մարդը մարդուն։

Մենք ճեղքեցինք անտես հյուլեն,
Մտանք նրա խորքերը մուժ,
Եվ մեր ձեռքին ունենք արդեն
Հրաշագործ հզոր մի ուժ։

Ձեզ ենք տալիս այդ ուժը նոր,
Դուք լավ սերտեք նրա լեզուն,
Եվ թույլ չտաք, որ նրանով
Ոչնչացնի մարդը մարդուն։

Ձեզ ենք տալիս մենք ամեն ինչ,
Քաղաք և գյուղ և կայարան,
Դաշտերն անծայր, ջրերը ջինջ
Եվ գաղտնիքներն իմաստության։

Բայց այդ բոլոր գանձերի մեջ
Ամենից վեհ ու պանծալի,
Այդ Լենինի ուսմունքն է մեծ,
Այդ գործն է սուրբ կոմունիզմի։

Հավատարի՛մ եղեք նրան,
Գործեք ազնի՛վ և իմաստո՛ւն,
Այնպես, որ վառ ծաղկի նման
Ժպտա սիրով մարդը մարդուն։

Սիրեք իրար և ժպտացե՛ք
Ձեր ընկերոջ հաղթանակին,
Իսկ թշնամուն ճանաչեցե՛ք.
Նա միշտ փոխում է իր կաշին...

Կերտեք պայծառ մեր ապագան,
Գործեք ազնիվ և իմաստուն,
Այնպես, որ ջինջ աստղի նման
Լուսավորի մարդը մարդուն։

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 11

ՆՈՅԵՄԲԵՐ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՍ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# 35 ՏԱՐԻ

Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ

*(Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ)*

Նոյեմբերի 29-ը պատմական օր է հայ ժողովրդի կյանքում: 1920 թվականի նոյեմբերի քսանիննին Հայաստանի բանվորները և աշխատավոր գյուղացիները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեցին բուրժուաների ու կալվածատերերի իշխանությունը՝ դաշնակցական կառավարությունը և հաստատեցին բանվորների ու գյուղացիների Սովետական իշխանություն:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազատարար դրոշը ծածանվեց ազատասեր և խաղաղասեր հայ ժողովրդի վրա: Ռուս ժողովրդի եղբայրական օգնության շնորհիվ հայ ժողովուրդը ընդմիշտ փրկվեց ամեն տեսակ սարսափներից, կոտորածներից և ֆիզիկական բնաջնջումից:

Նախասովետական Հայաստանը խեղճ ու աղքատ, տնտեսապես և կուլտուրապես հետամնաց երկիր էր: Հայաստանի արդյունաբերությունը Ղափանի և Ալավերդու պղնձահանքերն էին, որոնք գտնվում էին ֆրանսիական կապիտալիստների ձեռքին և դաշնակցական կառավարության ժամանակ փակվել էին: Երևանի գինու-կոնյակի գործարանը և մի քանի մանր արհեստանոցներ նույնպես գտնվում էին կապիտալիստների ձեռքին: Ավելի տխուր և ծանր էր հայ գյուղի դրությունը: Գյուղում չկար տրակտոր, կոմբայն և այլ գյուղատնտեսական մեքենաներ: Գյուղացիները ստանում էին շատ ցածր բերք և չէին կարող նրանով ապրել: Նախասովետական Հայաստանի գյուղերի մեծ մասում չկար դպրոց. բնակչության 90 տոկոսից ավելին անգրագետ էր: Շատ քիչ էին հիվանդանոցները, և աշխատավորների մեծ մասը զրկված էր բժշկական օգնությունից: Ակումբների, գրադարանների, թատրոնների, կինոյի, ռադիոյի մասին խոսք լինել չէր կարող. հայ աշխատավորը զուրկ էր բոլորից: Գյուղերում և քաղաքների մեծ մասում չկար էլեկտրական լուսավորություն:

Հայ ժողովրդի համար ավելի ծանր և ողբերգական դրություն ստեղծվեց 1918 թվականի հունիսից մինչև 1920 թվականի նոյեմբերի քսանին, այսինքն դաշնակցական կառավարության ժամանակ: Դաշնակների երկու և կես տարիների տիրապետության ընթացքում առանց այն էլ հետամնաց տնտեսությունը՝ գյուղում և քաղաքում հասավ լրիվ քայքայման: Կիսագաղութային երկիրը դաշնակների օրոք դարձավ գաղութային երկիր, որտեղ իշխում և տեր ու տնօրեն էին անգլիական, ֆրանսիական, ամերիկյան իմպերիալիստները: Երկրում տիրում էր սով և աղքատություն, տարածված էին հիվանդությունները: Փակվել էր եղած դպրոցների և հիվանդանոցների մեծ մասը և դրանց տեղ ստեղծվել էին որբանոցներ:

Հայ ժողովուրդը չէր կարող տանել դաշնակների այդ ծանր լուծը:

Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունները բանվորներին և աշխատավոր գյուղացիներին նախապատրաստում էին զինված ապստամբության:

1920 թվականի մայիսյան ապստամբություն-

# ՏԱՍՆՄԵԿ ՏԱՐԻ ՀԵՏՈ

Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ

Լուսանկարները՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

*1966 թվականի հունիսյան պայծառ առավոտ է։ Մի խումբ պիոներներ ավագ ջոկատավար ընկեր Սեդրակի գլխավորությամբ դուրս ենք եկել ուսումնասիրելու հայրենի քաղաքը՝ Երևանը։ Ճանապարհորդությունն սկսում ենք կայարանից։*

*Կայարանում աշխույժ եռուզեռ է։ Արագ-արագ եկումուտ են անում ուղևորները։ Նրանցից ոմանք անցնում են սպասարան, ոմանք՝ ճեմասրահ, ոմանք էլ՝ ճաշարան կամ հյուրանոց։ Մենք մտնում ենք ճեմասրահ, հիանում առաստաղի հնկայական քարե վարդերով, ապակեպատ գեղեցիկ դռներով և դուրս ենք գալիս շենքից։*

*Կայարանի դիմաց փռվել է մի լայն հրապարակ։ Նրա կենտրոնում կապույտին է տալիս ջրավազանը, որի պատերին թառած արագիլների բերաններից ցայտում են ջրի շիթերը։ Մենք շրջում ենք մայթերով ու լսում ավագ ջոկատավարին։*

*— Դուք նոր էիք ծնվել, երբ սկսեցին կառուցել կայարանի այս շենքը, ապա այդու ջրավազանը, և մայթերին չինարի ծառեր տնկեցին։ Նախկին կայարանից ոչինչ չի մնացել։ Փոխվել է նաև գնացքը. առաջ մեզ տանում էր շոգեքարշը, իսկ այժմ՝ էլեկտրաքարշը՝ հանգիստ, անաղմուկ, արագ…*

*Կայարանի հրապարակում նստում ենք մեր ավտոմեքենան ու սլանում բետոնապատ փողոցներով։*

*— Առաջ մեր փողոցները ասֆալտապատ էին։ Ամռանը ասֆալտը տաքանում էր, հալչում ու կպչում էր անցորդների ոտքերին, մեքենաների դողերին։ Ասֆալտի փողոցները շուտ-շուտ են վերանորոգման կարիք զգում, իսկ այսպիսի փողոցներով հարյուր տարի տրակտոր էլ որ գնա, ոչինչ չի լինի։*

*Մենք անցնում ենք Այգեստանի կենտրոնական փողոցով։*

*Աջ կողմը կառուցված մեկը մյուսից գեղեցիկ շենքերը կարծես վազում են դեպի մեզ։ Նայում ենք դեպի ձախ և մեր աչքերի առաջ բացվում է քաղաքի ընդհանուր տեսարանը։*

*Մեքենավարը դանդաղեցնում է ընթացքը։ Մեր դեմ բարձրացել է մեծ ու փառահեղ մի շենք, որի ճակատին ոսկեզօծ տառերով գրված է. «Երևանի Վ. Մ. Մոլոտովի անվան համալսարան»։ Ընկեր Սեդրակն ասում է, որ նախկին համալսարանը գտնվում էր Աբովյանի անվան փողոցի վերևում*



Հայաստանի պրոֆմիությունների շենքի նախագիծը

*Շենքը փոքր էր, իսկ ուսանողները շատ էին։ Հիմա ուրիշ է. հանրակացարանն էլ է այստեղ, կինոթատրոնն էլ։*

*Վերջանում է Այգեստանի լայն ու ծառազարդ փողոցը։ Թռչում ենք Գետառի կամուրջով, անցնում Կիրովի փողոցը և դուրս գալիս Աբովյանի փողոցը։ Դիտում ենք բժշկական ինստիտուտի նոր ու բազմահարկ շենքերը, գյուղատնտեսական ինստիտուտը։*

*Կանգ ենք առնում ծաղկազարդ պուրակում, Խ. Աբովյանի հուշարձանի առջև։ Այստեղից դեպի ներքև, մինչև Շահումյանի հրապարակը, ձգվում է մեծ գրողի անվան լայնահուն փողոցը։ Առաջ նա այսպես գեղեցիկ ու լայն չի եղել։*

*Գնում ենք զուգահեռ՝ Տերյանի փողոցը։*

*— Սա էլ Կարլ Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտն է,— ցույց է տալիս ջոկատավարը ծիրանագույն հինգհարկանի շենքը։*

Այնուհետև գնում ենք Մատենադարան, որ վերջերս բարձրացել է Քանաքեռի ստորոտում։ Տեռասների ձևով ձգված աստիճաններով բարձրանում ենք վերև։ Աստիճանների երկու կողմում դրված են Մեսրոպ Մաշտոցի, Մովսես Խորենացու, Եղիշեի, Անանիա Շիրակացու, Գրիգոր Նարեկացու և մեր հին ու միջնադարյան գրականության մյուս պայծառ դեմքերի մարմարյա արձանները։

Մեր ջոկատավարը պատմում է, թե այստեղ ինչ նոր ձեռագրեր են ուսումնասիրվել սովետահայ գիտնականների կողմից և ինչ նոր տվյալներ կան հին Հայաստանի կուլտուրայի վերաբերյալ։

Նորից մեքենայի մեջ ենք։ Գնում ենք Քանաքեռ։ Անցնում ենք Հաղթանակի անվան զբոսայգին։ Մեր հետևից ու առջևից սլանում են բազմաթիվ ու բազմատեսակ մարդատար մեքենաներ՝ տարբեր գույնի ու մեծության։ Սակայն ոչ մի աղմուկ չկա։ Նրանք բոլորն էլ աշխատում են ատոմային էներգիայով։ Հեռվում երևում են գործարանների ծխնելույզներ, կանոնավոր շարքերով դասավորված թիթեղածածկ տներ։

Պարզվում է, որ դա էլ հենց Քանաքեռն է, որը միացել է մայրաքաղաքին ու դարձել նրա արդյունաբերական թաղամասերից մեկը։ Մեզ զարմանք են պատճառում հսկայական ձուլարանները։ Գործարանների միջև և նրանց շուրջն ընկած են փարթամ այգիներ։

Միկոյանի շրջանում տեսնում ենք բազմաթիվ նոր գործարաններ։ Դրանցից քիչ հեռու տարածված են բանվորական ավանները։

Անցնում ենք Կոմիտասի փողոցով։ Նրա վերին



Պետական համալսարանի շենքի նախագիծը։

մասում գտնվում է անմահ կոմպոզիտորի անվան հրապարակը. կենտրոնում բարձրանում է ինքը՝ մարմարակերտ Կոմիտասը, որ կարծես հենց նոր է փակել ձեռքին բռնած երգերի տետրակը և երջանիկ հայացքով դիտում է շուրջը։



Կայարանի շենքի ներսը։

Ահա և Կիևյան փողոցը, որի ներքևի մասը միանում է Հրազդանի վիթխարի կամուրջին։ Կամուրջի մյուս կողմն արդեն Երևանի Շահումյանի շրջանն է։ Այստեղ տեսնում ենք լիմոնադի գործարանը, Լենինի անվան մետաքսագործվածքեղենի ֆաբրիկան, ֆիզկուլտուրայի ինստիտուտը և մի քանի նոր դպրոցներ ու ակումբներ։

Նոր ենք հասել Երևանից էջմիածին տանող խճուղին, երբ հեռվում երևում է ինչ-որ կապտավուն տարածություն։ Պարզվում է, որ դա մի մեծ՝ յոթանասուն հեկտար մակերես ունեցող լիճ է։ Առաջ այստեղ եղել է Նոր Կողբ գյուղը։ Այդ լիճը փոխել է կլիմայական պայմանները և ամբողջ շրջակայքը դարձրել այգեստան։ Ափսոսանքով ենք բաժանվում գեղեցիկ լճից։ Վերջապես մենք հասնում ենք Խ. Աբովյանի

անվան Մանկական երկաթուղի։ Անցնում ենք Հրազդանի նորակառույց կամուրջով։ Գետի աջ ափին գտնվում է նոր ստադիոնը, որը քառասուն հազար մարդ է տեղավորում։ Ստադիոնն ունի թենիսի, վոլեյբոլի, բասկետբոլի, ֆուտբոլի, մարմնամարզության և այլ հրապարակներ։ Գրանիտյա աստիճաններով բարձրանում ենք Ծիծեռնակաբերդ։ Առաջ այստեղ միայն լերկ ժայռեր են եղել, իսկ այժմ ամբողջ շրջապատը ծառաստան է դարձել։

Մի փոքր շրջում ենք մրգատու ծառերով զարդարված շավիղներով, ցած իջնում և ապա բարձրանում Կոնդ։ Ծուռտիկ փողոցներ, մեջք-մեջքի տված խարխուլ տներ՝ մրոտված պատշգամբներով, նեղլիկ բակերով։

— Մի զարմացեք,— ժպտում է ջոկատավարը,— այս թաղամասը, որպես թանգարան, մնում է նույնությամբ, ինչպես եղել է հնում։

Կոնդից իջնում ենք հարյուր մետր լայնություն ունեցող մի պողոտայով, որի մեջտեղով ձգվում են ծաղկանոցներն ու պուրակները։ Այս պողոտան հասնում է մինչև ռեսպուբլիկական ստադիոն։ Պողոտայի տեղն առաջ եղել են Սվերդլովի ու Սպանդարյանի փողոցները։

Քիչ հետո մեր երկնագույն մեքենան դանդաղ պտտվում է Լենինի հրապարակի շուրջը և մտնում կենտրոնին։ Մեզ թվում է, թե գտնվում ենք մի մեծ, շատ մեծ գորգի վրա։

— Տարիներ առաջ,— պատմում է ընկեր Սեդրակը,— հրապարակի կենտրոնը ասֆալտապատ էր։ Հետո բազմագույն գրանիտե սալիկներից մեր նկարիչները ստեղծեցին հայկական ոճի այս գորգանկարը։ Նորություն են նաև հրապարակը լուսավորող սյուները։ Դրանք շինված են Բժնու գրանիտից և կարող են դիմանալ մինչև երեք հազար թվականը։

...Մեր մեքենան բարձրանում է Նալբանդյանի փողոցով։ Փողոցի վերին մասում բարձրանում է հայ մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատ Միքայել Նալբանդյանի փառահեղ հուշարձանը։ Մոսկովյան փողոցում մենք տեսնում ենք նոր դպրոցական շենքեր ու գրադարաններ։ Ջոկատավարն ասում է, որ վերջին տարիներին Երևանում կառուցվել է 120 նոր դպրոց։ Դրա համար էլ հիմա բոլոր դպրոցները անցել են մեկ հերթի պարապմունքների։

Բաղրամյանի փողոցում մենք ներկա ենք լինում բնակելի մի շենքի կառուցմանը։ Հսկայական ավտոմեքենաներն ու վերամբարձ կռունկները բերում, բարձրացնում, դասավորում, իրար են միացնում կառուցվող շենքի պատրաստի պատերը, հատակը, առաստաղը։ Դրանք պատրաստված են գործարանում։ Որքան է թեթևացել կառուցող բանվորների աշխատանքը։

Երեկո է արդեն։ Մեկը մյուսի հետևից վառվում են փողոցների ու պուրակների լապտերները։

Քիչ հետո մենք տուն ենք գնում և մեզ հետ տանում պայծառ տպավորություններ...

## ԴՊՐՈՑԻ ԱՅԳՈՒՄ

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Աշուն, աշուն է հուրհրան,
Լուռ խորհում են անտառ ու լեռ,
Այգու ծառերն իրենց վրա
Օրորում են անուշ մի բեռ։
Մոտ ու հեռու բլուրներին
Շղարշվում է եղյամ ու մեգ,
Աշնան գովքն է երգում քամին
Ու խնձորներ թափում մեկ-մեկ։
Եվ բարդիները երկնահուպ
Կատարներն են քամուց ճոճում.
Դպրոցական այգում մի խումբ
Մանուկներ են ուրախ վիճում։
Վիճում են ու հատ-հատ քաղում
Խնձորները կարմիր ու մեծ.
Կողովներով տեղավորում
Դպրոցի նոր պահեստի մեջ։
Էլ քաղելու չկա ոչինչ,
Վերջին բարին են դուրս տանում,
Ծառերն իրենց ծանրությունից
Ազատվում են, հանգստանում։
Թռչկոտում են տղերքը մեր,
Աղջիկներն են երգով շրջում.
— Ծառե՛ր, դուք ձեր պարտքը տվել,
Հպարտությամբ եք շշնջում։
Ձեզ խնամել ամեն մի պահ՝
Այս մի պարտքն էլ մնում է մեզ,
Որ նորից երբ աշունը գա,
Առատություն լինի այսպես։




Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

1921 թվականի փետրվարին բրիտանական և օտարերկրյա այլ իմպերիալիստների օժանդակությամբ դաշնակ բանդիտները զինված ավանտյուրա են սկսում Սովետական Հայաստանի դեմ:

Հայ աշխատավորները մահվան ու կյանքի կռիվ են մղում Սովետական Հայաստանի գոյության համար: Այդ պայքարում փառավոր տեղ են գրավում նաև կոմերիտականները՝ Ղ. Ղուկասյանի, Ա. Բուդաղյանի և Ա. Խանջյանի ղեկավարությամբ:

Փետրվարի տասնյոթին դաշնակները օգնում են Երևանը: Զգտելով փրկել 11-րդ բանակի 20-րդ դիվիզիայի Երմոլենկոյի շրջապատված ջոկատը, կռվի է մեկնում նաև կոմերիտական ջոկատը՝ Արմենակ Բուդաղյանի ղեկավարությամբ:

Տպագրում ենք Ա. Հովսեփյանի «Ճանապարհին» պատմվածքը, որը պատկերում է այդ հերոսական մարտի մի դրվագը:

*Ձմեռային երկար գիշերը մոտենում էր իր վախճանին:*

*Քանաքեռի ճակատում դաշնակները շրջապատել էին Երմոլենկոյի ջոկատը: Ստեղծվել էր ծանր վիճակ: Կարմիրբանակայիններն իրենց քաջարի հրամանատարի հետ օրհասական մարտ էին մղում թշնամու դեմ: Երմոլենկոյի ջոկատը փրկելու համար կոմերիտականներից կազմված աշխարհազորը՝ Հայաստանի կոմերիտմիության ղեկավարներից մեկի՝ Արմենակ Բուդաղյանի գլխավորությամբ շարժվեց դեպի Քանաքեռ:*

*Օրվա կեսին գրությունն այնքան լարվեց, որ Արմենակը ստիպված եղավ հենց երթից կռվի նետել կոմերիտական ջոկատը: Նրան թվաց, թե ինքն ուշացել է, և որ հիմա ամեն ինչ այնպես չէ, ինչպես պետք է լիներ: Ատրճանակը բարձրացրեց ու գլխից վեր թափահարելով բղավեց.*

*— Առա՜ջ... իմ ետևից...,— դուրս եկավ ճանապարհից, վազեց խորդուբորդ դաշտով: Նրա ետևից ու կողքերից վազում էին մարտիկները:*

*Արդեն հասել էին հակառակորդի դիրքերին, երբ քողարկված դարաններից գրոհողներին դիմավորեց հրացանային համազարկը: Արմենակն առանց վազքը դադարեցնելու, նայեց չորս կողմ: Նրա ձախ կողմով վազող մարտիկը վայրկենապես կանգ առավ կարծես դեմ առավ ինչ-որ արգելքի, ապա ամբողջ մարմնով թեքվեց առաջ ու ընկավ գետին...*

*— Պառկեցե՛ք,— հրամայեց Բուդաղյանն ու պառկելով ձայնեց.— Կրա՛կ...*

*Դեռ ամբողջ շղթան չէր պառկել գետնին, երբ առջևում սկսեցին պայթել արկերը, սուլեցին գնդակները:*

*Նա ժամանակ չունեցավ նույնիսկ դիրքավորվել: «Մի՞թե կործանվելու ենք, առաջադրանքը չկատարած» անցավ նրա մտքով ու նույն պահին էլ զարմացավ տեսնելով, որ կրակը հանկարծակի դադարեց:*

*Արմենակը բարձրացավ պառկած տեղից և ամբողջ ուժով գոռաց.*

*— Ճեղքակի հարվա՛ծ... Մոտ է Երմոլենկոյի ջոկատը... Պետք է փրկել:*

*Պառկած շղթան ոտքի թռավ: Լսվեցին հրաձգային ու գնդացրային հերթազարկեր:*

*— Առաջ ու միայն առաջ,— շարունակ գոչում էր Արմենակը: Նա թշնամու վրա նետեց ձեռքի նռնակն ու վազեց կոմերիտականների բացազատված շարքերի հետ...*

*Ճանապարհի վրա, իրենցից աջ, կրակը սաստկացավ: Հարվածել սկսեցին հրանոթային մարտկոցները: Բուդաղյանը հասկացավ, որ կենտրոնում հարձակում է սկսել մի այլ ջոկատ իրենց առաջխաղացումը պաշտպանելու համար: Գրոհն ավելի արագացավ: Թռչում էին առաջ ինչպես արծիվներ, ուշադրություն չդարձնելով չորս կողմից սուլող գնդակներին, ընկնողների կանչերին: Կոմերիտական ջոկատը կատարեց վերջին ցատկումը, նեղ շերտով ճեղքեց թշնամու օղակն ու հասավ Երմո-*

լենկոյին...

— Ընկեր Երմոլենկո,— ասաց նա հևալով,— խմբավորման հրամանատարը հրամայեց ետ քաշվել նոր դիրքեր և միանալ հիմնական ուժերին:

Վիրավոր Երմոլենկոն, գլուխը դժվարությամբ բարձրացրեց, շուռ եկավ դեպի Արմենակը:

— Ճեղքվա՞ծ է օղակը,— հարցրեց նա և ստանալով դրական պատասխան, բղավեց.



— Չեմ թողնի, որ թշնամին ծաղր ու ծանակի ենթարկի կարմիր հրամանատարին...

— Կռվով ենք քաշվել հրամանա...,— նա չկարողացավ վերջացնել խոսքը: Բառերը մնացին կոկորդում: Թափահարեց ձեռքը, գլարվեց կողքի վրա ու անշարժացավ...

Արմենակը բռնեց Երմոլենկոյի ձեռքը և նայեց նրա երկնագույն աչքերին: Նրանք սառն էին ու անկենդան: Ափսոսանքի ու վշտի մի զգացում ծակեց նրա սիրտը: Նա պինդ համբուրեց մեռածի դեղնող ճակատը, նրա գլուխը զգուշությամբ իջեցրեց հողին, վերցրեց հրացանն ու սկսեց կրակել դրոհող թշնամու վրա...

Տարված մարտով, Արմենակը չլսեց իր մոտ եկած կապավորին, որն ասում էր.

— Հրամանատարը հրամայեց անմիջապես շարժվել դեպի ճանապարհը: Թշնամու նոր, մեծ ուժեր Նարքի ձորից անցնում են ձեր թիկունքը:

Բուդաղյանը կապավորի վրա ուշադրություն դարձրեց միայն այն ժամանակ, երբ նա վերստին կրկնեց հրամանը և քաշելով թևից տվեց խմբավորման հրամանատարից բերած ծրարը:

Նա արագ բացեց ծրարը ու կարդաց: Հետո թուղթը դրեց գրպանը և օգտվելով թշնամու հարձակման թուլացումից ջոկատին հրամայեց թեքվել աջ ու գնալ դեպի խճուղի: Մարտիկները ոտքի կանգնեցին, բացզգաստված վազեցին դեպի նոր դիրքերը:

Բուդաղյանը մի պահ նայեց Երմոլենկոյին ու որոշեց տանել իր հետ: «Չեմ թողնի, որ թշնամին ծաղր ու ծանակի ենթարկի կարմիր հրամանատարին», որոշեց նա, կռացավ, իր նիհար, բայց մկանոտ թևերով վերցրեց Երմոլենկոյին ու քայլեց առաջ...

Մոտենում էին ճանապարհին: Շտապ եկավ հետախույզը, զեկուցեց.

— Թշնամու մի զորաշղթա Նորքի կողմից անցել է մեր թիկունքը...

Արմենակը մի վայրկյանում ըմբռնեց ստեղծված իրադրությունը: Նա ցած դրեց Երմոլենկոյին, հրացանին ամրացրեց սվինն ու հրաման տվեց.

— Սվինամարտի՛,— ու վազեց առաջ:

Նա ցատկեց փոքրիկ թմբի վրայից, առաջ գցեց աջ ոտքը և հանկարծ զգաց, որ ձախը չի պոկվում տեղից... Աչքերի առաջ ինչ-որ սև ու կանաչ բծեր երևացին: Լարեց ուժերը, մթագնող միտքը, փորձարեց առաջ շարժվել տեղից, բայց թեքվեց կողքի ու վայր ընկավ Երմոլենկոյից քիչ հեռու... Երբ ուշքի եկավ, տեսավ, որ մայր մտնող արևի ծիրանագույն շողերը մարում են դիմացի լեռան կատարին: «Ի՜նչ տարօրինակ գույն ունեն» անցավ նրա մտքով: Նույն պահին մի անասելի ցավ զգաց: Նա ձեռքը տարավ դեպի կողը: Վերքից ծորացող արյունը թրջեց նրա ձեռքը: Նա զսպեց տանջալի ցավը, ճիգ գործ դրեց, լարեց միտքն ու մրմնջաց. «Ի՞նչ եղան մարտիկները... Ո՞ւր են հիմա նրանք և ինչո՞վ վերջացավ»: Նայեց շուրջը: Նրա ձախ կողմում մեկը ծանր տնքում էր, լսվում էր նրա անընդմեջ հևքը: Դեմից սրարշավ գալիս էին մի խումբ հեծյալներ... «Թշնամին է» մրմնջաց նա, ճիգ արավ, վերցրեց կողքն ընկած հրացանը, բարձրացրեց, ուզեց նշան բռնել, բայց ուժերը

*դավաճանեցին։ Հրացանը վայր ընկավ թուլացած ձեռքից ու նա կորցրեց գիտակցությունը…*

***

*Դաշնակները Արմենակին նետեցին քաղաքի կենտրոնական բանտը։ Մարտ ամսի վերջերին Կարմիր Բանակը մոտենում էր Երևանին։ Դաշնակները խուճապահար փախան Դարալագյազ և բանտարկյալներին հետները տարան։ Նրանք խոշտանգում էին կոմունիստներին։*

*Ճանապարհին Բուդաղյանի դրությունը ծանրացավ։ Ծեծն ու խոշտանգումները հյուծել էին նրան։ Նա այլևս չէր կարողանում քայլել։*

*— Էլ ուժ չունեմ, Արմենա՛կ,— հազիվ շշնջաց նրա մարտական ընկերը՝ Թաղիանոսյանը,— տաքությունն այրում է ինչպես քուրայում։*

*Նա հազաց ու վայր ընկավ։ Արմենակը ճիգով դուրս քաշեց ոտքը կպչուն ցեխից, մի քայլ արեց, կռացավ, որ բարձրացնի Թաղիանոսյանին, բայց վիրավոր ոտքը ծալվեց, ինքն էլ վայր ընկավ ու այլևս չկարողացավ բարձրանալ տեղից… Բացված վերքից արյուն էր հոսում։*

*— Տիգրա՛ն,— ձայնեց Բուդաղյանն ու նորից փորձեց օգնության ձեռք մեկնել ընկերոջը. բայց ոտքի ցավն ավելի սաստկացավ։ Թաղիանոսյանը խամրող աչքերով նայեց Արմենակին, շշնջաց.*

*— Ես, սիրելի… Արմեն…,— նա չկարողացավ վերջացնել բառը։*

*— Առ քեզ,— ասես երազում լսեց նա ու մեջքի վրա սուր ցավ զգաց։*

*— Դրան էլ, շո՛ւտ, առանց գնդակի,— լսվեց դաշնակցական խմբապետի ձայնը, և ձիու սմբակները գոփեցին նրա գլխավերևում։*

*— Ոճրագործնե՛ր, լավ իմացեք, մերոնք կգան և մեր վրեժը կլուծեն,— հազիվ ասաց Արմենակը։ Սվինը փայլեց նրա աչքերի առաջ և չանցած մի վայրկյան, խրվեց նրա կուրծքը։*

*Բուդաղյանը վայր ընկավ մեջքի վրա։*

*Անձրևը հորդացավ… Կանաչով ծածկված դաշտը, անձրևաջրով լվացված, ասես սգում ու թախծում էր, կարոտելով արևին, որ մի քանի օր էր ինչ չէր երևում երկնակամարում… Լսվում էր թընդանոթների հեռավոր որոտը, որ գնալով մոտենում էր, ազդարարելով ոճրագործների կործանումը։*

# Սահակ պապի ԽՈՍՔԸ

Հ. ՍԱՀՅԱՆ

Որոտանի կիրճում
Կա մի փոքրիկ տնակ։
Որոտանի կիրճում
Թե մի գիշեր մնաք,
Պիտի հյուր ընդունի
Ձեզ մի կայտառ ծերուկ,
Որ լայն ճակատ ունի
Եվ փառահեղ մորուք։

Բարի ծերուկ է նա,
Մեղվանոցի պահակ,
Եվ կոչում են նրան՝
Խաչի պապենց Սահակ։
Նա պատմություն կանի,
Որին ինքն էր վկա,
Պատմություններ կանի
Եվ խրատներ կտա։
Պատմություններ պես-պես,
Որ եկան ու անցան…
Հետո ցույց կտա ձեզ
Մի գեղեցիկ արձան…
— Խոնարհվեցեք,— կասի,—
Այս արձանի առաջ,
Որ կանգնել է լռին՝
Ծառերի մեջ կանաչ։
Ռուս քաջ զինվոր է նա,
Գրկին մանուկն անմեղ,
Որին փրկել է նա
Աղետներից ահեղ,
Նա մանկանը, տեսեք,
Ինչքա՜ն նուրբ է գրկել…
Այդ մանկան հետ նա ձեր
Մանկությունն է փրկել։

Ռուս մեծ ազգին դուք
Սիրեք ամբողջ սրտով,
Սիրեք ամբողջ կյանքում,
Ամբողջ ժողովրդով։
Սիրեք սրտով բոլոր,
Ինձնից ձեզ ամանաթ,
Եվ չեք տեսնի նեղ օր
Դուք ոչ մի ժամանակ…

# Խիզախում

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Լեռների հետևից դուրս սահող արևի ճառագայթները նուրբ գույներով շղարշել էին ձյունապատ կատարները։ Մանիշակագույն մշուշը թեթև զեփյուռի մեջ դողդողում ու հալվում էր լճակի խաղաղ ջրերի վրա։ Այդ օրը կատարվեցին ջրի առաջին չափումները...

Դարեր են անցել այս լճի վրայով։ Հողմերը ծեծել ու քայքայել են նրա ժայռոտ ափերը։ Ծերացած կեչիները ընկել են գետին։ Թանձր գիշերն իջել է լճակի վրա, ու ջուրը մթնել։ Ապրել է լճակն իր ամփոփ կյանքով, ապրել է մենակ, քարե գավաթում, լեռների գրկին։ Բայց հանկարծ ամեն ինչ փոխվեց։ Նոր մարդիկ եկան։ Եկան ու այլևս չգնացին. մնացին լճակի ափին։ Նոր մարդիկ խիզախ էին ու առույգ։ Հուզվեց լճակը, ծանր ալիքներով խփեց ժայռերին, որոտաց, գոչեց, բայց մարդը չհեռացավ։ Եվ անցան օրեր, ամիսներ, գարնանը հաջորդեց ամառը, ամռան շնչից փթթեց ու մանկացավ Մորժոտ լեռը։ Լճակի ափերին բարձրացան ու դեպի շուրջը ձգվեցին ձյունափայլ շուշանները։ Աղմկեցին ու թնդացին շինարար մեքենաները, բազմաթիվ մարդիկ գիշեր ու ցերեկ ջրի առաջ պատվարներ կառուցեցին։

Տայգայում բարձրանում էր հիդրոկայանի շենքը։

Շինարարությունը մոտենում էր իր վախճանին։ Բուրխալա գետի կամուրջն ավարտված էր, լայն ու հարմար խճուղին՝ պատրաստ։ Գրեյդերները վերջին անգամ կարում էին խճուղու վրա նկատված անհարթությունները։ Լճի չորս կողմում բարձրացել էին բազմաթիվ տներ։ Մնում էր դպրոցի շենքը և ակումբի կառուցման աշխատանքների մի մասը։ Բայց Անդրեյ Անդրեյիչն անհանգիստ էր։ Այդ եռանդուն, ուրախ ու կատակասեր մարդուն կարծես թե փոխել էին. դարձել էր լռակյաց, մտախոհ ու թախծոտ։

— Ա՛ննա, ինչո՞ւ է այդպես փոխվել մեր գլխավոր ինժեները,— հարցրեց Լոմովսկին երեկոյան թեյի ժամանակ։ Աննան թեյով լի բաժակը ետ մղեց ու մի պահ մտածեց։

— Այո, փոխվել է,— պատասխանեց նա։

— Շապոշնիկովն ասում է, թե նա ամբարտակի նախագծի մեջ հաշվումների սխալներ է գտել, և հիմա ուղղելն անհնարին է։

— Դժվարանում եմ որևէ բան ասել, բայց հազիվ թե դա ճիշտ լինի։ Նա լավ մասնագետ է։

— Մոտ օրերս, հիդրոկայանը պետք է փորձարկվի,— ասաց Լոմովսկին մի տեսակ ցավագին տոնով,— եթե սխալը նկատել է, ինչո՞ւ չի ուղղում։

— Չեմ կարծում որ սխալ լինի։ Ինձ թվում է, թե նա պարզապես տկար է, վատառողջ։ Գիշեր-ցերեկ աշխատում է, հոգնել է, հանգստանալ է պետք և ուրիշ ոչինչ։

Աննան նորից քաշեց բաժակը և հենց ուզում էր խմել՝ դուռը թակեցին։

— Խնդրե՜մ։

Դուռը բացվեց և ներս մտավ հյուսն Վասյա Կլիմենտևը։

— Կարելի՞ է, բարև ձեզ։

— Խնդրե՜մ, խնդրե՜մ,— վրա բերեց Աննան, վեր կացավ տեղից և ավելացրեց,— խնդրեմ նստեցեք, Վա՛սյա, եթե դեմ չեք լինի՝ մի բաժակ թեյ լցնեմ։

— Շնորհակալ եմ, Ա՛ննա Մաքսիմովնա, ես միայն մի քանի րոպեով եմ եկել. ինձ ուղարկեց Անդրեյ Անդրեյիչը և խնդրեց, որ դուք հենց հիմա անցնեք իր առանձնասենյակը։

Աննան նայեց Լոմովսկու երեսին և կասկածամտորեն բարձրացրեց ուսերը։

— Այս ժամի՞ն,— շշնջաց նա և շալը գցեց ուսերին։

Սպիտակ գիշերվա պայծառ լույսերի մեջ նիրհում էր արծաթաձույլ լճակը։ Ավանը քնած էր։ Երբ Աննան ներս մտավ գլխավոր ինժեների առանձնասենյակը, վերջինս բարձրացավ տեղից։ Նրա դեմքն այնքան գունատ էր ու հոգնած, որ Աննան մի պահ շփոթվեց։

— Դուք ինձ կանչե՞լ եք, Անդրե՛յ Անդրեյիչ,— հարցրեց դռան շեմքից։

— Այո...

Աննան առաջ եկավ։ Անդրեյ Անդրեյիչ Զուբովսկին սեղանի վրայից վերցրեց մի թղթի կտոր և մեկնեց Աննային։ Թղթի վրա հասարակ մատիտով թվեր էին գրված։ Աննան նայեց թվերին, շալը գցեց գլխից ու, չսպասելով Զուբովսկու հրավերին, նստեց աթոռին։

— Իսկ եղանա՞կը։

— Տեղատարափ անձրև, առանց պարզումնե-

րի,— պատասխանեց Զուբովսկին և ավելացրեց.— տուրբինների մեկը դեռ ամրացված չէ։ Ամբարտակի պատնեշը, որը պահում է Իշայծյամ գետակի ջրերը, դեռ չի պնդացել, իսկ ջուրը բարձրանում է։ Առավոտյան ջրի բարձրությունը եղել է երկու մետր և երեսուն սանտիմետր, կեսօրին՝ երեք մետր և քառասուն սանտիմետր, իսկ երեկոյան հասել է չորս մետրի։ Սա շատ վտանգավոր է,



...Տատոն իջավ կամուրջից։

պարտբյուրոյի ընկեր քարտուղար։

Աննան վերկացավ տեղից, աչքի տակով նայեց Անդրեյ Անդրեյիչի գունատ դեմքին ու հարցրեց.

— Դուք հիվա՞նդ եք, Անդրեյ Անդրեյիչ։

— Ո՛չ,— պատասխանեց ինժեներն ու թեթևակի ժպտաց։

Ժպիտը թույլ էր ու բռնազբոսիկ։ Աննա Մաքսիմովնան նկատեց այդ, նա ցանկանում էր մի բան էլ հարցնել, բայց շուռ եկավ ու արագ քայլերով հեռացավ։

Անդրեյ Անդրեյիչը անմիջապես խորասուզվեց ծանր մտքերի մեջ։ Սպասվելիք հեղեղը սպառնում էր Բուրխալա գետի կամրջին, և եթե կամուրջը քանդվեր, ծանրաքարշ ավտոմեքենաները, որ բերում էին վերջին սարքավորումները, չէին կարող մոտենալ հիդրոկայանին։ Եթե Իշայծյամ գետի ջուրը մի քիչ էլ բարձրանա կքանդի նորակառույց, կիսավարտ ամբարտակը։ Գետի անսանձ ջրերը կհորդեն լճակին ու կտանեն տուրբինները, կավերեն հիդրոկայանի շենքը։ Ինժեների լարված ու մթնած դեմքն ակոսվեց խոր կնճիռներով։

Դուռը զգուշությամբ ծեծեցին։

— Խնդրեմ,— անբնական ձայնով գոչեց ինժեները։

Ներս մտան չուկչի Տատոն և Նիկոլայ Խոմենկոն։

— Նստեցե՛ք։

Երբ եկողները նստեցին, Անդրեյ Անդրեյիչն ասաց.

— Դուք համոզվա՞ծ եք, որ կամուրջը կփրկեք առանց բրիգադի օգնության։

— Այո,— պատասխանեց Տատոն,— միայն թե շուտ հասնենք, կես ժամվա ճանապարհ է։

— Զգույշ եղեք, չմրսեք. եթե օգնության կարիք լինի, հեռախոսով իմաց տվեք։ Հաջողություն եմ ցանկանում...

Խոմենկոն ու Տատոն դուրս գնացին։

Կես գիշեր էր։ Ամպերի սև քուլաներն իջնում էին լեռան կատարից։ Հեռվում ինչ-որ տեղ ամպրոպները ծվատում էին հորիզոնը։ Երբ բոլորը հավաքվեցին ու նստեցին իրենց տեղերը, Զուբովսկին բացատրեց ստեղծված դրությունը և վերջում ավելացրեց.

— Խնդրում եմ տաք հագեք։ Ով իրեն վատառողջ է զգում, թող տանը մնա։ Ամեն ինչ պա՞րզ է, ընկերներ։

— Պարզ է, պարզ է,— պատասխանեցին մի քանիսը։

Քիչ հետո ավանը լի էր մարդկանցով։ Սև ամպերը թուջի նման կախվել էին լճակի վրա. ծանր էին նրանք ու անշարժ։ Օդն սկսեց սառչել, և ճայթեց առաջին ամպրոպը։ Աննա Մաքսիմովնան շրջեց բրիգադները և բոլորին տեսավ, չկային Անդրեյ Անդրեյիչը, չուկչի Տատոն և Խոմենկոն։

— Յա՛ն, չե՞ս տեսել նրանց,— հարցրեց նա ինձ։

— Քիչ առաջ Օլշանն էր այստեղ։

Նորից փայլատակեց կայծակը և սկսեց հորդ անձրև տեղալ։ Աննան շտապեց տուրբինների մոտ։

Բրիգադներն ամրացնում ու ձգում էին տուրբինները պահող պողպատալարերը։ Աննան ու Լոմովսկին անընդհատ նայում էին ջրաչափական քանոնին և սարսափով նկատում, որ ջուրն անց-

նում է քանոնի վրա կարմիր գույնով նշանակված ճակատագրական գիծը։

Այդ նույն պահին Անդրեյ Անդրեյիչը և Օլյանը հսկում էին Իշայծյամ գետակի ջրերը։ Գլխավոր ինժեները նայում էր ջրաչափական քանոնի թվերին, իսկ պատանի Օլյանը պատրաստ բռնել էր ձեռքին պայթուցիկ նյութերի հետ միացված լարը և սպասում էր հրամանի։ Ջուրը բարձրանում էր։ Եվ երբ նա հասավ կարմիր գծին, Անդրեյ Անդրեյիչը նշան տվեց։ Օլյանը վառեց լարը։ Եվ այն



Առավոտը խաղաղ էր ու լուսավոր...

վայրկյանին, երբ ջրի ծանր հարվածների տակ երերաց էլեկտրակայանի շենքը, կտրվեցին նաև տուրբիններ պահող լարերից երկուսը։ Տուրբիններից մեկը թեքվեց ու սկսեց սահել առաջ։ Իշայծյամ գետի վրա իրար հետևից երկու հզոր պայթյուն լսվեց։ Որոտն այնքան ուժեղ էր ու անսպասելի, որ Աննան ճչաց ու բռնեց սահող տուրբինի պողպատալարից։ Այդ պահին բոլորն էլ տեսան, թե ինչպես պայթյունի սև քուլաների հետ օդ բարձրացան ժայռի կտորներ և արմատախիլ արված ջահել կեչիներ։ Պայթյունից քանդվեց գետակի ձախ ափի պատվարը։ Ջուրը հոսեց լեռան ազատ լանջերով և լճակը չթափվեց։ Լճակի ջուրն իջավ, և թեքված տուրբիններն ուղղվեցին



Հեղեղն այնպես էր կատաղել, որ Տատոն ու Խոմենկոն հազիվ դուրս եկան խճուղի։

— Ուշացանք,— գոչեց Տատոն։ Խոմենկոն ցատկեց ավտոմեքենայի խցիկը, ղեկն առավ ձեռքերի մեջ, ու երբ Տատոն էլ բարձրացավ, մեքենան շարժվեց տեղից։

Տատոն դեռ երեկոյան էր նկատել, որ գետը մեծ քանակությամբ գերաններ ու արմատահան արված ծառեր է բերել ու կուտակել Բուրխալա գետի կամրջասյուների տակ։

Երբ նրանք տեղ հասան, կամուրջն արդեն թեքվել էր։

— Բռնիր պարանը,— ասաց Տատոն և պարանի ազատ ծայրը կապելով իր մեջքին, իջավ կամուրջից։

Հեղեղն ուժեղանում էր, քամին սաստկանում։ Սառնասիրտ որսորդը կարթաձողը ձեռքին՝ մեկ առ մեկ ուղղում և ճամփա էր դնում խռնված գերաններն ու ծառերը։ Քիչ հետո Խոմենկոն զգաց, թե ինչպիսի արագությամբ ու թեթևությամբ սլացավ հեղեղը։ Տատոն շարժեց պարանը, Խոմենկոն կամաց վեր քաշեց նրան։

— Մի քիչ էլ որ ուշանայինք, ջուրը կամուրջը կտաներ,— ասաց Տատոն։

Նրա հոգնած դեմքը մի տեսակ լուսավորվեց։

Առավոտը խաղաղ էր ու լուսավոր, ջրերը հանդիստ էին։ Հիդրոկայանի շինարարությունը մտավ իր բնական հունի մեջ։ Այդ օրը ծանրաքարշ ավտոմեքենաները բերեցին նաև վերջին սարքավորումները։

Մոտենում էր հիդրոէլեկտրակայանի փորձարկման օրը։



Եթե հիմա Բելիչ ավանում հարցնեք, ձեզ կասեն, որ դեպի «Ջեկ Լոնդոն» լճակը ձգված է լայն ու հարմար խճուղի, որ այնտեղ է ապրում որսորդ Տատոն։ Կասեն նաև, որ Լոմովկին ու Աննա Մաքսիմովնան երեխաներ ունեն, որ Լոմովկին հիդրոէլեկտրակայանի պետն է։ Դեռ շատ հեռվից ցույց կտան ձեզ Մորժոս սարի գագաթների տակ վառվող հազարավոր էլեկտրական կրակներն ու նրանց մեջ երևացող տների կղմինդրե տանիքները. կասեն, որ այդ քաղաքն էլ է կոչվում «Ջեկ Լոնդոն», որ այնտեղ դպրոցներ և հիվանդանոցներ կան, կինոթատրոն, ֆուտբոլի դաշտ։ կասեն նաև, որ Աննա Մաքսիմովնան հիմա էլ առաջվա նման հիանում է լճակի և քաղաքի վրա բռնկվող հյուսիսային բևեռափայլով։ Եթե ցանկանաք տեսնել «Ջեկ Լոնդոնը» ձեզ կնստեցնեն փափուկ ավտոբուս, դուք կանցնեք Բուրխալա գետի մեծ կամուրջով և կես ժամ հետո կլինեք «Ջեկ Լոնդոնի» լուսավոր ու տաք հյուրանոցներից մեկում։




(Մոնտաժողի պատմածը)

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Ես բետոնային գործարանների մոնտաժող եմ։ Աշխատում եմ այնպիսի տեղերում, որտեղ խոշոր շինարարություններ և շատ բետոն է հարկավոր, ամենից՝ հիդրոկառուցումներին։ Հարկավոր է ջրանցք կառուցել՝ բետոն մատակարարիր, մտածել են շլյուզ կառուցել՝ դարձյալ բետոն, որոշել են ամբարտակ կառուցել՝ ավելի շատ բետոն տուր։ Այնտեղ, ուր կառուցումը ջրի հետ գործ ունի, առանց բետոնի առաջ չի գնա։

Այն բրիգադը, որ ես ղեկավարում եմ, բետոնային գործարաններ է մոնտաժել Լենինի անվան Վոլգա—Դոն ջրանցքի, Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոկայանների կառուցումների համար։

Երբ մենք ավարտեցինք աշխատանքները Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանում, մեզ հրավիրեցին Հայաստան աշխատելու։

Այստեղ հիդրոկայանները նման չեն այնպիսիներին, որոնք կառուցվում են հարթավայրերում։ Այնտեղ շինում են մեծ պատնեշներ, որոնց մոտ շատ ջուր է հավաքվում, ուղղակի մի ամբողջ ծով։ Այդ ջուրը ճնշում է գործադրում տուրբինների վրա և հիդրոկայանն աշխատում է։

Հրազդանի վրա մեծ պատնեշներ կառուցելու հարկ չկա։ Այստեղ գետը մինչև Երևան արագ հոսանքով է իջնում։ Հենց դրանից էլ ուժեղ ճնշում է ստացվում։ Հարկավոր է միայն այդ ճնշումը ճիշտ կերպով օգտագործել և հարկադրել ծառայելու մարդուն։

Ահա թե ինչպես է այդ կատարվում։

Գետի վրա, մի հարմար տեղ կառուցում են փոքրիկ պատնեշ, որպեսզի ջրի մակարդակը բարձրանա։ Պատնեշի կողքից, լեռան մեջ թունել են փորում։ Ջուրը հավաքվում է պատնեշի մոտ, ապա հոսում է դեպի թունելը։ Գետը դուրս է գալիս իր հունից և սկսում է հոսել թունելով։ Հետո ամեն ինչ կախված է նրանից, թե ինչպիսին է ճանապարհը։ Եթե տեղը հարթ է, ջուրն անցնում է բաց ջրանցքով, իսկ եթե խորդուբորդ է՝ կառուցվում է հատուկ կամուրջ, որը կոչվում է ակվեդուկ։ Եվ այդպես, ջուրը հոսում է մերթ թունելով, մերթ բաց ջրանցքով, մերթ ակվեդուկով։

Այդ ճանապարհին ջրի թեքությունն աննկատելի է. ավելի քիչ, քան գետի իսկական հունի թեքությունը։ Եվ ստացվում է այնպես, որ մի քանի կիլոմետրից հետո ջուրը գտնվում է զգալիորեն ավելի բարձր աստիճանի վրա, քան նրա իսկական հունի հատակը։ Ջրանցքի վերջում ջուրը հասնում է կիրճի եզրին և լայն խողովակներով ուժգնորեն թափվում ներքև։ Պատկերացրեք, թե ինչպիսի ճնշում է, ինչ հսկայական ուժ։ Ջրի հատակին, հիդրոկայանի շենքում, դրվում են տուրբիններ. ջուրը խփվում է նրանց թիակներին և գործի է դնում մեքենաները. հենց դրանք էլ տալիս են էլեկտրական էներգիա։

Հայաստանի ինժեներները որոշել են օգտագործել Հրազդան գետի ամբողջ ուժը. դրա համար կառուցվում է ոչ թե մեկ կայան, այլ մի քանիսը՝ ամբողջ մի կասկադ։ Ջուրը հաջորդաբար հոսում է մի կայանից մյուսը։ Այդպես լրիվ չափով օգտագործվում է նրա ուժը, նրա ամբողջ էներգիան։

Հրազդան գետի վրա կառուցվող կասկադը պետք է ունենա ութ կայան։ Երեք կայաններն արդեն գործում են և էլեկտրաէներգիա են մատակարարում գործարաններին, ֆաբրիկաներին, քաղաքներին ու գյուղերին։ Դրանք Սևանի, Գյումուշի

և Քանաքեռի հիդրոէլեկտրակայաններն են։ Հիմա կառուցվում է ևս մի կայան՝ Արզնիգէսը։ Մեր բրիգադն այդ կայանի կառուցման համար արդեն մոնտաժել է բետոնի երկու գործարան. մեկը ամբարտակի մոտ, որտեղ ջուրը մտնում է թունել, մյուսը՝ կայանի։ Հիմա պատմեմ, թե ինչպես է ընթանում Արզնիգէսի շինարարությունը։

Ինչպես արդեն ասացի, Հրազդանը շատ արագահոս գետ է։ Ամբարտակի տեղ բաց անելու համար անցկացվեց շրջանցող թունել, որի երկարությունը հարյուր վաթսուն մետր է։ Ջուրը ժամանակավորապես հոսում է նրա միջով, իսկ հունի ազատ տեղում կառուցվում է ամբարտակը։

Որպեսզի գետը հոսի այդ թունելով, նրա վերին մասում, գետի մի ափից մյուսը քարերից, ավազից ու հողից պատնեշ սարքեցին։ Գետը թեքվեց և մտավ թունել։ Հիմա ամբարտակի կառուցման տեղը ջուր չկա, և իրենց աշխատանքներն են սկսել բետոնային պատնեշի շինարարները։

Միաժամանակ կառուցվում են ապագա կայանի թունելները։ Լեռնագործները պերֆորատորներով փորում են կարծր բազալտե ժայռերը և հետո պայթեցնում։ Ապառներ հավաքող հատուկ մեքենաներով հավաքում են քանդածն ու բարձում վագոնիկները, իսկ էլեկտրաքարշերը դուրս են տանում ու թափում։ Համարյա բոլոր աշխատանքները կատարում են մեքենաները, որոնք արտադրված են մեր գործարաններում։

Լեռնագործներն ավելի ու ավելի են խորանում բազալտե ժայռերի մեջ։ Մի ուրիշ բրիգադ էլ առաջ է շարժվում լեռան հակառակ կողմից։ Երկու բրիգադները գալիս են իրար ընդառաջ։ Կան կարմիր գծեր, որտեղ բրիգադները պետք է հանդիպեն միմյանց։ Իհարկե, այդ կարմիր գծերը միայն նշանակված են սխեմաների վրա։ Բայց շուտով դրանք կդառնան մի տեղ, ուր կճեղքվի պատը, և թունելագործներն ստորերկրյա ճանապարհի վրա կողջունեն իրար։ Եռում է աշխատանքը նաև բաց ջրանցքի աշխատամասերում։ Այստեղ փորում են հայտնի «Ուրալյան» և քայլող էքսկավատորները։ Նրանց հետևից շարժվում են բետոնագործները և բետոնապատում են ջրանցքի պատերն ու հատակը։

Կայանի շենքը կառուցվում է Արզնի կուրորտից ոչ հեռու։ Դրա համար էլ կոչվում է Արզնիգէս։ Այդ մասում կիրճն այնքան նեղ է, որ կայանի շենքի տեղ չկա։ Դրա համար էլ որոշված է շենքը կառուցել... բազալտե ժայռի մեջ։ Լեռնագործներն սկզբում նեղ անցք բաց արին դեպի ժայռի խորքը, հետո մտան այդ անցքով և սկսեցին լայնացնել իրենց շրջապատը։ Ամենահետաքրքիրն այն է, որ կայանի շենքի կառուցումն սկսվում է ոչ թե ներքևից, ինչպես բոլոր շենքերինը, այլ վերևից՝ տանիքից։

Լեռնագործները մտան ժայռի մեջ, ազատ տարածություն բաց արին ու նրա «առաստաղն» ամրացրին բետոնով։ Հիմա նրանք փորում են ժայռը և անընդհատ իջնում ցած, շարելով բետոնի պատերը։ Այսպիսով ժայռի ներսում ստացվում է երկաթբետոնային մի տուփ, որտեղ կտեղավորվեն կայանի տուրբինները, գեներատորները, ենթակայանները, և այդ բոլորը մի քանի սենյակում։

Կայանի շինարարությունն ընթանում է արագ։ Կանցնեն ամիսներ և նոր հզոր հիդրոկայանը էլեկտրական հոսանք կտա մեր ռեսպուբլիկային։




Գ. ՍԱՐՅԱՆ

Հայրենի տունկեր դալար,
Մեր գարնան չքնաղ բույսեր,
Մեր անցնող հոգու համար
Դուք գալիք կյանքի հույսեր:
Ձեր արմատը մայր հողում
Ամրանա ու բող անի,
Ձեր ամեն տերև, ցողուն
Գարնան հետ բող կանաչի:

Մեծանաք, դառնաք ծառեր,
Մեծանաք ուրախ երգով,
Բարձրանաք երկինքն ի վեր,
Կռանաք՝ փարթամ բերքով:
Արմատներդ տան ծիլեր,
Անհամար նոր ծառ անի,
Բազմադար երկիրը մեր
Ձեզանով միշտ կանաչի:



## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ



# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇՆՈՐՀԻՎ

Ռ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Լուսանկար՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

*Աշունն արդեն ոսկեզօծում էր Նոր Բայազետի քաղաքային պուրակի բարձրակատար բարդիները։ Հրաչիկ Զաքոյանն աշխատանքից տուն էր վերադառնում։*

*Տանը նրան դիմավորեցին ծնողները, եղբայրներն ու երեխաները։ Զարաճճի մանուկները փաթաթվեցին Հրաչիկի վզին։*

*Փոքրիկներից մեկը թռավ ու միացրեց ռադիոն։ Ժողովրդական երգի թովիչ հնչյունները լցրին սենյակը։*

*Շուտով համերգը վերջացավ ու, երբ բազմանդամ ընտանիքը նստել էր ընթրիքի, ռադիոն հաղորդեց, որ ուժեղ ցրտեր են սպասվում։ Ընթրելուց հետո Հրաչիկն անմիջապես դուրս թռավ տնից։*

*Հովհաննես Սարուխանյանի անվան դպրոցում նրան դիմավորեց դիրեկտորը։*

*— Ինձ աշխատողներ են հարկավոր,— արագ-արագ ասաց Զաքոյանը։— Ցրտերն սկսվում են, ծխախոտը պետք է փրկել, պետք է ժամանակին հավաքել...*

*— Քեզ կօգնեն պիոներները։*

*Մյուս օրը պիոներները Հրաչիկ Զաքոյանի օղակի անդամների հետ միասին ծխախոտ էին հավաքում։ Մի քանի օր այդպես աշխատեցին նրանք։*

*Չորս քույրերը՝ Սաթիկ, Լիդա, Զարիկ, Թամար Չխոլյանները, հերոսին հետևելով, աշխատում են նրա նման ոգևորված։*

*— Տես, ի՜նչ արագ է հավաքում։*

*Ընդմիջման ժամանակ պիոներները շրջապատում են հերոսին։ Սաթիկն առաջարկում է.*

*— Ընկե՛ր Զաքոյան, ի՜նչ լավ կլիներ, եթե Դուք մեր ջոկատավարը լինեիք։*

*Հրաչիկը ժպտում է։ Ջոկատավա՞ր... Հնարավո՞ր է արդյոք։ Ինքն աշխատում է կոլտնտեսության դաշտերում, վաղուց է հրաժեշտ տվել պիոներական կազմակերպությանը, դպրոցին. և հիմա առաջարկում են ջոկատավար դառնալ։*

*— Այո, այո,— Սաթիկի հետ կրկնում են մյուսները,— հրաշալի կլինի...*

*— Հրաշալի՜,— կրկնում է հերոսը։— Առայժմ շտապենք՝ փրկենք ծխախոտը. հետո ամեն ինչ կլինի այնպես, ինչպես դուք եք ցանկանում։ Խոսք եմ տալիս։*

***

*Օրերը գալիս էին, գնում։ Պիոներներն անբաժան էին հերոսից, բայց դասերը երբեք չէին մոռանում։ Նրանք լավ էին սովորում և ստացած բարձր գնահատականներով պարծենում նրա մոտ։ Նրանք Հրաչիկ Զաքոյանին արդեն համարում էին իրենց ջոկատավարը։*

*Եվ ահա Հրաչիկ Զաքոյանը կոմերիտմիության Բայազետի շրջկոմի առաջին քարտուղարի մոտ է։ Խնդրում է իրեն ջոկատավար նշանակել այն ջոկատում, որի պիոներներն օգնեցին իրեն ծխախոտի տերևաքաղի ժամանակ։*

*Աշխատանքի մեջ, դժվարությունները հաղթահարելու ճանապարհին աճեց պիոներների ու Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի ջերմ բարեկամությունը։*

*Դա 1951 թվականին էր։ Այդ տարի Հրաչիկ Զաքոյանն ստացավ Լենինի երկրորդ շքանշանը։*

***

*Հրաչիկ Զաքոյանը իր պիոներներին էքսկուրսիա էր տանում։ Միասին գնում էին Սևան, ըղբոսնում կղզում, նավակով կտրում լճի ալիքները, կենդանիներ, միջատներ բռնում, գույնզգույն քարեր հավաքում դպրոցի համար։ Նրանք Երևան էլ եկան ու մասնակցեցին «Հին ու նոր Երևանը» թեմայով քաղաքային հավաքին։*

*— Ընկե՛ր Զաքոյան,— մի օր առաջարկեցին պիոներները,— լավ կլինի ձեր դաշտում մեզ համար մի հողակտոր առանձնացնեք, այնտեղ փորձեր կատարենք։*

*Ջոկատավարը հավանություն տվեց այդ առաջարկին։ Պիոներներն իրենց հողակտորում*

*անեցրին ձմերուկ, վարունգ, կաղամբ, եգիպտացորեն, ճակնդեղ, տաքդեղ, պոմիդոր։ Վարունգն ուտելիս ջոկատավարն ասում էր.*

*— Ի՞նչ համեղ է։*

*— Բա որ ձմերո՞ւկը փորձեք... Զոլաքարցիներն անգամ կնախանձեն։*

*Մի օր էլ պիոներներն եկան ջոկատավարի մոտ, թե՝*

*— Ընկե՛ր Զաքոյան, Նինա Բալագյոզյանի մայրը ծանր հիվանդ է։ Նինան դպրոց չի եկել, տանն էլ փոքրիկներ կան...*



Հ. Զաքոյանը իր ջոկատի պիոներների հետ.

*Զաքոյանը մի խումբ պիոներների հետ գնաց Նինայենց տուն։ Նինան դեղ էր տալիս հիվանդ մորը, խնամում, ճաշ եփում փոքրիկների համար։*

*Զաքոյանն շտապեց պոլիկլինիկա ու վերադարձավ բժշկի հետ։ Նինայի մայրիկին տարան հիվանդանոց, իսկ փոքրիկներին ուղարկեցին մսուր։ Նինան սկսեց դպրոց հաճախել։ Ընկերներն օգնում էին նրան։*

*— Մայրիկդ լա՞վ է,— միշտ հետաքրքրվում էր ջոկատավարը։*

*— Այո, ընկե՛ր Զաքոյան, շնորհակալ եմ։*

*Ժորա Գողելյանը շատ էր խանգարում դասերին, լավ չէր սովորում։ Ընկերներն անհանգըստացան ու այդ մասին հայտնեցին ջոկատավարին։ Մի երեկո Զաքոյանը գնում էր Ժորայենց տուն, երբ տեսավ, որ Ժորան փողոցում մի փոքրիկ երեխայի բռունցքով ծեծում է։ Այն պահին, երբ Ժորան ուզում էր նորից խփել փոքրիկի գլխին, մի ամուր ձեռք կանգնեցրեց նրան։ Տղան շուտ եկավ, տեսավ ջոկատավարին և ամոթահար կախեց գլուխը։ Ջոկատավարը նրա հետ սկսեց զրուցել։ Նա մտավ նրանց տուն, խոսեց ծնողների հետ։*

*— Ժորան կխելոքանա, նա լավ տղա է,— ասաց ջոկատավարը։*

*Նա ազատ ժամերին իր հետ տանում էր դաշտ և սովորեցնում քաղհանել։ Ժորային միացան ընկերները։ Նրանք քաղհանեցին քառասուն հեկտարի ցանք։ Ժորան այժմ ջոկատի խորհրդի նախագահն է, ուսման գերազանցիկ։*

*Հրաչիկ Զաքոյանի ծխախոտագործների օղակի շատ անդամներ հիմա իր ջոկատի պիոներներից են։ Այստեղ են չորս քույրերը՝ Սաթիկը, Լիդան, Զարիկն ու Թամարը։ Նրանց մասին Հերոսը մեծ գովասանքով է խոսում։*

*Նրա ջոկատի բոլոր պիոներները սովորում են համառորեն, տիրապետում գիտելիքներին, որ աշխատեն սիրելի ջոկատավարի մոտ և նրա հետ միասին հերոսաբար հավաքեն սոցիալիստական դաշտերի առատ բերքը։*



*Դրսում շողում էին Մոսկվայի անհամար լույսերը։ Հրաչիկ Զաքոյանը նստած էր շքեղ դահլիճում, որտեղ տեղի էր ունենում ջոկատավարների Համամիութենական կոնֆերանսը։ Պատգամավորներ էին եկել Ուկրաինայից, Բելոռուսիայից, Հայաստանից, Հեռավոր Սիբիրից։ Նրանք պատմում էին պիոներական դրուժինաների կյանքի մասին, պատմում էին, թե պիոներական աշխատանքներն ինչպես են օգնում ուսման գործում։ Իրենց գործերի, նվաճումների մասին պատմեց նաև Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ջոկատավարը։ Նրան լսում էին բոլորը, լսում էին ուշադրությամբ։*

*— Այդ ամենին մենք հասել ենք մեր բարեկամության շնորհիվ,— ասաց Հերոսը։ Երբ ես գալիս էի Մոսկվա, պիոներներն ինձ ասացին. «Գնացեք հանգիստ սրտով, մենք այստեղ ամեն ինչ կանենք»։ Եվ հիմա ես շատ հանգիստ եմ։ Վստահ եմ, որ նրանք արժանավոր փոխարինողներ են։*

*Արժանավոր փոխարինողներ, այսպես է մտածում իր պիոներների մասին կոլտնտեսության դաշտերի անվանի Հերոսը։*



ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ՍՄՈԼՆԻՈՒՄ
Գործ՝ Ն. ՕՍԵՆԵՎԻ
(«Սովետական Միություն» ամսագրից)



ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ



Ս. ՍՊԱՆԴԱՐՅԱՆ



Ղ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱ

Ծանր օրեր էր ապրում Հայաստանը: Օտարերկրյա գաղութարարների հլու-հպատակ, հայ ժողովրդի դավաճան դաշնակները սովի ու ավերի էին մատնել մեր գեղեցիկ երկիրը: Կործանումից փրկվելու միակ ելքը Սովետական Ռուսաստանի հետ եղբայրական դաշինք կնքելու, նրա քաջագործ բանվոր դասակարգին ու աշխատավոր գյուղացիությանը միանալու մեջ էր: Դրա համար պայքարում էր հայ ժողովուրդն այն ժամանակ: Ազատության համար պայքարող բանակներին դեպի հաղթանակ էր տանում Հայաստանի պանծալի Կոմունիստական պարտիան: Առաջին շարքերում էին գնում այն մարդիկ, որոնց դիմանկարները դու տեսնում ես այս էջերում, սիրելի պիոնե՛ր: Սրանք էին, որ ազատության



Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ



Ա. ՄՈՒՍԱՅԵԼՅԱՆ



Հ. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ



Ա. Լ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ



Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ

կարմիր դրոշը բարձր պահած աշխատավոր մասսաներին տանում էին դեպի արևաշող առավոտ: Քո երջանիկ այսօրվա ու լուսաշող ապագայի համար կռվեցին սրանք: Սովի ու մահվան ճիրաններից քեզ ընդմիշտ փրկելու համար ընկան նրանցից շատերը, պիոնե՛ր: Լավ նայիր այս խիզախ մարդկանց դեմքերին և հիշիր, որ կոմունիզմի մետաքսափայլ դրոշը քեզ են հանձնել նրանք. դու պիտի տանես առաջ՝ դեպի ապագան մարտերի բոցերով անցած, գնդակոծված, բայց միշտ փողփողուն այդ դրոշը և հպարտությամբ հանձնես քեզ փոխարինողներին, գալիք սերունդներին: Ուրեմն, արժանի եղիր այդ պատվին, պատրաստ եղիր դրան, պիոնե՛ր:



Ս. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ



Ն. ՍԵՎՅԱՆ



Ա. ՄՌԱՎՅԱՆ



Գ. ԱԹԱՐԲԵԿՅԱՆ



## «ՀԵՌԱԳԻՐ ԼԵՆԻՆԻՆ»

*1920 թվականին ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում լայն ծավալ են ստանում։ Նոյեմբերի քսանիննին Իջևանի (Քարվանսարայի) և Դիլիջանի աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ զինված ապստամբություն է բարձրացնում։ Ապստամբները կազմակերպում են Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե, որը Հայաստանը հայտարարում է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։*

*Նոյեմբերի երեսունին գրավելով Դիլիջանը, Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն այնտեղից ողջույնի հեռագիր է ուղարկում Վ. Ի. Լենինին։*

«Թող հայտնի լինի համաշխարհային ռևոլյուցիայի առաջնորդին,— ասվում էր հեռագրում,— որ Դիլիջանի և Քարվանսարայի գյուղացիները, վրդովված դաշնակների կառավարության ճանցագործ քաղաքականությունից և երկրում սկսած անարխիայի խորացումից, բարձրացրին ապստամբության դրոշը... Առաջին հարվածը հասցված է՝ Դիլիջան քաղաքը մեր ձեռքումն է: Ոգևորված ապստամբները սլանում են առաջ՝ ատելի թշնամուն՝ Անտանտայի գործակալին, վերջնականապես կործանելու համար: Եվ կատարելով նրանց կամքը, մենք, կազմելով Ռևկոմ, առաջ ենք շարժվում, լի հույսով, որ Արևելքի ճնշված ժողովուրդների ազատարարը՝ Սոցիալիստական Մեծ Ռուսաստանի հերոսական Կարմիր Բանակը ցույց կտա մեզ իրական օգնություն մեր այս դժվարին պայքարում: Հայաստանի բոլոր բանվորների ու գյուղացիների անունից մենք խնդրում ենք Ժողկոմսովետին ցույց տալ այդ օգնությունը: Կեցցե՛ Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Ռեսպուբլիկան:

Կեցցե՛ նրա հաղթական Կարմիր Բանակը»:

*Պատմական այս հանդիսավոր պահն է, որ պատկերել է նկարիչ ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԸ իր «Հեռագիր Վ. Ի. ԼԵՆԻՆԻՆ» նկարում։*

# ՀԱՎԱՔՈՒՅԹ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Ծ. ՇԱՂԳԱՄՅԱՆ

Լուսանկարները՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

— Ահա և մեր ջոկատավարը,— Երևանի Ջեթ-օճառ գործարանի լցման ցեխի պետ Օգսեն Գրիգորյանին նկատելով, ասում է Արփան:

— Գիտե՞ք, նա գործարանի կոմերիտական կազմակերպության քարտուղարն է,— հպարտությամբ վրա է բերում 46-րդ դպրոցի ավագ ջոկատավարը:

Սրտառուչ է ջոկատավարի և պիոներների հանդիպումը գործարանի բակում, հենց այն լորենու տակ, որտեղ նրանք շաբաթներ առաջ խոսել են այսօրվա հավաքույթի մասին:

Երկրորդ ջոկատի պիոներներն առաջին անգամը չէ, որ լինում են գործարանում: Այդ մասին է վկայում նրանց պատրաստած «Ինչ է արտադրում Ջեթ-օճառ գործարանը» ստենդը, որը դրված է դպրոցի պիոներական սենյակում: Դա մի ցուցափեղկ է բաժանված առանձին վանդակների, որոնցից առաջինի մեջ շշեր են շարված: Դրանցից մեկում տեխնիկական գլիցերին է, մյուսում՝ ռուսական սև յուղ, երրորդի մեջ՝ մարգարին, իսկ չորրորդի մեջ բոլորին ծանոթ բամբակի զտված յուղն է: Օճառներ էլ շատ կան. է՛լ «Կակաչներ», է՛լ «Մեխակ», է՛լ «Մորի»... Երկրորդ դասարանցիները հետաքրքրությամբ դիտում են ստենդը և հարցեր տալիս դրուժինայի խորհրդի նախագահ Օլեգ Ոսկանյանին:

— Օճառի փրփուրն ինչպե՞ս է ստացվում,— հարցնում է վառվռուն աչքերով մի տղա:

Օլեգը մի պահ մոլորվում է. չի կարողանում իսկույն պատասխանել, չնայած գիտե, որ օճառը յուղից են պատրաստում:

— Ես քո հարցին հետո կպատասխանեմ,— ասում է Օլեգը,— մենք Ջեթ-օճառ գործարանում հավաքույթ ենք նախապատրաստել:

Հավաքույթի օրն է: Պիոներները գտնվում են հունդի մեխանիկական մաքրման ցեխում: Մեծ մեքենաներ, խլացուցիչ աղմուկ: Անընդհատ դողդողում է ծակոտկեն ցանցը, որը լցված է հունդով: Այդ մեքենան մաքրում է հունդը բամբակի մնացորդներից: Գործարանի ինժեներ Գ. Մնացականյանը մի ձեռքով վերցնում է անմշակ հունդը, մյուսով՝ մեքենայի միջից դեպի ներքև թափվող արտադրանքը:

— Ի՞նչ մեծ տարբերություն,—զարմացած բացականչում է Վարսիկը,— վրան բամբակի ոչ մի նշույլ չի մնացել:

Պիոներների աչքի առաջ զտված հունդը լայն խողովակով թափվում է նախապատրաստման ցեխը:

— Մենք շատ կշեռքներ ենք տեսել, բայց այսպիսին՝ երբեք,— կանգ առնելով կշեռքի առաջ ասում է Շաքեն:

Կշեռքը նման է սովորական արկղի, որի մեջ լցվում է մաքրված հունդը: Երբ հաշվիչը ցույց է տալիս հարյուր կիլոգրամ, կափարիչն իսկույն փակվում է, և հունդը ներքև թափվում: Ապա կրկին բացվում է, լցվում հունդով և այսպես շարունակ: Հաշվիչը ցույց է տալիս, թե արտադրության մեջ ինչքան հունդ է մտնում: Ահելի մեքենաներ են գոլլերները, որոնց մեջ հունդը ջարդում են: Պիոներները հետաքրքրությամբ դիտում են դանակները: Նրանցից մեկը շարժական է, մյուսն անշարժ: Շարժական դանակը պտտվելով



Պատրաստում են ստենդը:

ակնթարթային արագությամբ ջարդում է հունդը և թափում մաղի մեջ։

Վերջապես երեխաները կանգ են առնում ձեթի ստացման ցեխում։ Մեքենաների աղմուկ չի լըսվում։ Հատուկ հարմարանքների մեջ միջուկը բովվում է։ Ապա սեղմիչները քամում են ձեթը։



Պիոներները օճառի ցեխում։

— Մի՞թե սա է ձեթը,— զարմացած հարցնում է էլմիրան,— բոլորովին էլ նման չէ մեր օգտագործածին։

Ինժեները խորհրդավոր ժպտում է ու պատասխանում.

— Շուտով դուք կտեսնեք, թե այս մուգ շագանակագույն հեղուկից ինչպես է ստացվում ձեզ ծանոթ ձեթը, գլիցերինը, ռուսական սև յուղը, մարգարինը։

— Հիմա էլ գնանք օճառի ցեխը,— անհամբերությամբ ասում է Օլեգը։ Նրան մտահոգում է այն հարցը, թե ինչպես է ստացվում փրփուրը։

Օճառի ցեխում պիոներները ծանոթանում են հմուտ օճառագործ Մուրադ Գևորգյանի հետ։ Նրանց միջև հետաքրքրական զրույց է սկսվում։ Վարպետ Մուրադը պատմում է օճառի ստացման մասին։

— Օճառի հիմնական բաղադրիչ մասը յուղն է։ Օճառ կարելի է պատրաստել կենդանական և բուսական յուղերից։ Գլիցերինի ցեխում դուք տեսաք, թե ինչպես յուղից առաջ տռկոս գլիցերին անջատելուց հետո, այն յուղաթթու է դառնում և մտնում օճառի ցեխը։ Այդ յուղաթթուն էլ օճառացվում է նատրիում ջրածնով։ Նա պիոներներին ցույց է տալիս սպիտակ, անհոտ քիմիական նյութը՝ օճառի սոդան։

— Սրա և յուղաթթվի միացությունի՞ց է ստացվում սպիտակ փրփուրը,— վրա է բերում Օլեգը։

— Այո, այդ փրփուրն էլ մաքրում է կեղտը,— ավելացնում է օճառագործը։

Երեխաների համար արդեն ամեն ինչ պարզ է։ Նրանց շատ է հետաքրքրում նաև ձեռքի հոտավետ օճառի ստացման եղանակը։

— Ձեռքի օճառն ավելի մաքուր յուղերից է պատրաստվում,— ասում է բանվորուհի Բավական Ավետիսյանը։

Երեխաները տեսնում են, թե ինչպես հեղուկ օճառը մեքենաների մեջ սառեցվում է, վեր ածվում օճառի տաշեղների։ Այդ տաշեղներն էլ մտնում են չորացման կամերա։ Հենց այստեղ էլ գույն և հոտ է տրվում նրանց։

Մեքենաները օճառի մասսան կտրում, փաթաթում են գույնզգույն թղթերի մեջ, իսկ բանվորները պատրաստի արտադրանքը լցնում են արկղները կամ փաթեթներ կազմում։

Ուսումնասիրությունից հետո պիոներները նորից հավաքվում են գործարանի բակում։ Նրանք ամփոփում են իրենց տպավորությունները, արտադրության մարդկանց խոստանում են հետևել նրանց օրինակին՝ դպրոցում օգտագործել ժամանակը ճիշտ, արդյունավետ։

Պիոներները գործարանից դուրս են գալիս նոր խոհերով, նոր գիտելիքներով։ Մեկը մտածում է դպրոցը վերջացնելուց հետո ինժեներ՝ դառնալ, մյուսին ոգևորել է օճառագործ վարպետ Մուրադը, երրորդն էլ մտածում է իր չոկատավարի՝ ցեխի երիտասարդ պետի մասին։ Իսկ Օլեգը վաղը կպատասխանի իր փոքրիկ բարեկամներին։

## ՄԵԶ ԳՐՈՒՄ ԵՆ

## ԲԱՐՁՐ ԳՆԱՀԱՏԱԿԱՆՆԵՐՈՎ

Մի անգամ, երբ մտա գրադարան, տեսա սեղանի վրա դրված մի գիրք: Նրա կազմի վրա նկարված էր մի աշակերտ, որը կանգնած գրատախտակի մոտ, կարծես թե, սպասում էր հուշելու: Գրքի վերնագիրն էր «Վիտյա Մալեևը տանը և դպրոցում»: Ես վերցրի այդ գիրքը: Տանը, դասերս սովորելուց հետո, կարդում էի, իսկ երբ ավարտեցի, որոշեցի ասել մեր ջոկատավարին, որպեսզի մեր ջոկատում անցկացնենք զրույց այդ գրքի մասին: Այդպես էլ եղավ: Ջոկատի խորհուրդը սկսեց այդ գործի նախապատրաստումը: Ես անընդհատ մտածում էի, թե ինչպես անենք, որպեսզի մեր ջոկատի ետ մնացող աշակերտները զգան, որ ինչի կարող ենք հասնել, եթե աշխատենք համախմբված, ջանասեր կերպով: Եվ գիտեք, այդ օրը եղույթ ունեցավ նույնիսկ Ժորա Մուրադյանը, որը վեց առարկայից ուներ վատ գնահատական: Նա ասաց, որ ինքն էլ Վիտյայի նման չի աշխատել և ծուլացել է: Մեր աշխատանքի արդյունքն եղավ այն, որ մենք էլ ավելի համախմբվեցինք, կազմակերպեցինք ընկերական լավ օգնություն:

Իսկ հիմա արդեն, ոչ միայն Ժորան, այլև նրա նման հինգ պիոներներ վերացրել են վատ գնահատականները: Մեր ամբողջ ջոկատը ձգտում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման երեսունհինգերորդ տարեդարձը դիմավորել «4» և «5» գնահատականներով:

*ՌԱԶՄԻԿ ԱՌՋՈՅԱՆ*

*(Կիրովականի 5-րդ դպրոցի 3-րդ ջոկատի խորհրդի նախագահ)*

## ԽԻԶԱԽ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

*Ախտայի շրջանի Աթարբեկյանի կոլտնտեսության դաշտում հրդեհ էր բռնկվել, որը սպառնում էր աշնանացանի առատ բերքի խուրձերին։*

*Այդ նկատեցին դպրոցի աշակերտներ փոքրիկ Սլավիկն ու Լիպարիտը։ Նրանք անմիջապես օգնության կանչեցին մոտերքում գտնվող, նույն դպրոցի աշակերտ Վաչագանին։ Չնայած վառվում էր նրանց ոտքերն ու ձեռքերը, այնուամենայնիվ խիզախ պիոներները սկսեցին կռվել ուժեղացող կրակի դեմ։ Վաչագանը հանեց իր պիջակը և փաթաթեց գլուխը, որ կրակից դեմքը պաշտպանի. ապա նա սկսեց գլորվել դեզերի վրայով և հանգցնել կրակը։ Նրա օրինակին հետևեցին նաև Սլավիկն ու Լիպարիտը։*

*Շուտով օգնության հասան կոլտնտեսականները։ Նրանց օգնությամբ հանգցվեց կրակը։*

*Կոլտնտեսության վարչությունը խիզախ պիոներներին պարգևատրեց թանկարժեք նվերներով։*

Մ. ԱՄԻՐՅԱՆ

## ԵՐՋԱՆԻԿ ԱՂՋԻԿ

*Մ. ԴԻԼԲԱԶԻ*

(Ադրբեջանցի բանաստեղծուհի)

Զառանգի աղջիկ ես դու
Թիթեռի պես թռչուն,
Քո գեղեցիկ աչիկներում
Շողում է վառ մի գարուն:
Ապրում ես դու ազատ, անհոգ
Մեր երկրում երջանիկ,
Դու չես տեսել կյանքում երբեք
Վիշտ, արտասուք ու կարիք:
Չի մնացել եղբայրը քո
Օտար մարդկանց հարկի տակ,
Արդեն դպրոց է նա գնում
Ձեռքին՝ գիրք ու պայուսակ:
Չի արտասվել մայրդ երբեք
Օրոցքիդ մոտ զոր-գիշեր՝
Թեթևանար սիրտը տխուր,
Էլ չտեսներ սև փշեր:
Ապրիր, ազատ դու խնդությամբ,
Վարդեր բացվեն քո ճամփիդ,
Մենք չենք քողնի սև օրն անցյալ
Մտնի տունդ կնոջախինդ:
Խաղա, երգիր զվարթաձայն
Զառանգի դու աղջիկ,
Երկիրը մեր շեն ու առատ
Քո մեծ տունն է երջանիկ:

Փոխադրեց Հ. ՍԵՎԱՆ

## ՊԱՏԿԵՐ

Աստղերի նման շողում են այնպես
Լի հատիկները լուսե խաղողի,
Ու միշտ խնդությամբ, հճճշությամբ մի հեզ
Փարվում է կրծքիս հուռը գեղանի:
Վառ, արևաներկ խնձորն է ժպտում
Ու ողջույն տալիս անա տանձենուն,
Փշատենին էլ մի երգ է շշնջում
Ու բույրով լցնում այգին իմ խնդուն:
Շողում են հրաշք ձևերով հազար
Շողում ու ժպտում գույներով նախշուն.
Այգիս լեցուն է բերքով անհամար,
Զա՜ն սովետական բերքառատ աշուն:

ԺԻՐԱՅՐ ԹՈՐՈՍՅԱՆ

# ՀՐԱՇԱԳՈՐԾ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՊԱԼԱՏԸ

Գ. ԲԱԴԱԼՅԱՆ

Լուսանկար՝ Ն. ԳՐԱՆՈՎՍԿՈՒ (ՏԱՍՍ)

Ընդարձակ պավիլիոնը լեփ-լեցուն էր այցելուներով։

— Հայրի՛կ, տես, այս տրակտորի վրա գրված է «Բելոռուս», նշանակում է Մինսկո՞ւմ են արտադրում,— ցույց տալով առաջին տրակտորը, հարցրեց Սուրիկը։

— Այո,— հայրիկի փոխարեն պատասխանեց էքսկուրսավարը։— Ահա տեսեք, թե ինչպիսի բազմատեսակ ու տարբեր հզորության տրակտորներ ունենք մենք։ Ստալինգրադի գործարանները մեր Հայրենիքին կես միլիոնից ավելի տրակտոր են տվել։ Հազարավոր տրակտորներ են արտադրում Խարկովի Ձերժինսկու անվան, Չելյաբինսկի Կիրովի անվան, Ալթայի, Մինսկի, Լիպեցկի և Վլադիմիրի տրակտորային գործարանները։



Մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի պավիլիոնը։

Հայրը Սուրիկին ցույց տվեց հեռվից փայլփլող տարբեր գույների ավտոմեքենաները։

— Ավտոնե՛ր,— գոչեց Սուրիկը և վազեց պավիլիոնի խորքը։ Պատվանդանի վրա կողք-կողքի շարված էին «ԶԻՄ», «ԶԻՍ—110», «Պոբեդա», նոր տեսակի «Մոսկվիչ», «Գազ—69» և այլ տիպի մեքենաներ, որոնք սովետական ավտոգործարանների գեղեցկուհիներն են։

Օժանդակ հրապարակում Սուրիկին շատ զարմացրեց ինքնաթափ մի մեքենա, որի անիվը իրենից բարձր էր։

— Այս մեքենան միանգամից քսանհինգ տոննա բեռ է փոխադրում։

— Ուրեմն սա տասնվեց անգամ ավելի բեռ է վերցնում, քան «Գազ—51» մեքենան... Ա՛յ քեզ հսկա,— բացականչեց տղան։

Նրանք մտան պավիլիոնի հաջորդ դահլիճը։ Այստեղ ցուցադրվում էին տարբեր տեսակի կոմբայններ։

— Ահա «Ստալինեց—6», «Ս—4» ինքնագնաց կոմբայնները։ «Ստալինեց—6» կոմբայնը մեծ է, հզոր. առաջ է շարժվում տրակտորի օգնությամբ և ավելի շատ հունձ է կատարում, քան ինքնագնացը։

Կոմբայնը միանգամից մի քանի աշխատանք է կատարում. հնձում է, կալսում, քամհարում և հատիկը լցնում բունկերի մեջ,— բացատրում է էքսկուրսավարը։

— Իսկ սա ի՞նչ մեքենա է,— հարցրեց Սուրիկը,— ցույց տալով «Ստալինեցի» աջ կողմը դրված մեքենան։

— Եգիպտացորեն հավաքող մեքենա է։ Գիտե՞ք, սա էլ շատ լավ մեքենա է. կտրում է եգիպտացորենի ցողունը, անջատում է հատիկները և լցնում բունկերի մեջ, իսկ կանաչ մասսան էլ մանրացնում է սիլոսի համար։ Այս կոմբայնը միանգամից երեսուն մարդու գործ է կատարում։

Հաջորդ մեքենան բամբակահավաք կոմբայնն էր։ Սուրիկն իմացավ, որ այդ մեքենան բամբակը շատ արագ և մաքուր է հավաքում։

— Սովետական ինժեներները սրանից ավելի բարդ մեքենաներ էլ են ստեղծել,— պատմում է էքսկուրսավարը.— կարտոֆիլահավաք, ճակնդեղահավաք, բրինձ հավաքող կոմբայններ և բազմաթիվ այլ մեքենաներ, որոնք մեծ չափով թեթևացնում են մարդու աշխատանքը։

*Նայելով բրինձ հավաքող մեքենային, Սուրիկն իսկույն հիշեց անցած դասերից մեկը։ Պլանտացիաներում բրինձը մշակելու և հնձելու համար մարդիկ շարունակ պետք է մինչև ծնկները ջրի մեջ մտնեն և այդպես աշխատեն ամբողջ օրը։ Դա շատ է ազդում մարդկանց առողջության վրա։ Իսկ այժմ մեքենան է ցանում ու հավաքում բրինձը։*

*Հաջորդ դահլիճում նրանք մի հետաքրքրական մեքենա տեսան։*

*— Սա հացահատիկ չորացնող մեքենա է,— բացատրեց էքսկուրսավարը։— Պատահում է, որ կոմբայնից ստացված հատիկն իր մեջ խոնավություն է պարունակում։ Եթե այդպես տեղափոխվի պահեստ, խոնավությունից կսկսի տաքանալ ու փտել, այրվել։ Այս մեքենան կոմբայնին զուգընթաց առաջ է շարժվում, իր մեջ է առնում ցորենը, մաքրում և միաժամանակ չորացնում։ Ահա և մի ուրիշ հետաքրքրական մեքենա՝ խոտհարը։ Տեսնո՞ւմ եք գետնին ընկած ատամնավոր երկար կտրիչը, սա երկու մետր լայնությամբ հնձում է խոտը և թողնում գետնի վրա։ Երբ խոտը չորանում է, գալիս է փոցխող մեքենան, որը փոցխում է և կույտերի վերածում։ Հետո գալիս է դիզող մեքենան...*

*Սուրիկն ու հայրը մտնում են «էլեկտրիֆիկացիա» բաժինը։ Միմյանց կողքի դասավորված են շարժական էլեկտրակայանի, միկրոգէսի սարքերը, թրթուրավոր էլեկտրատրակտորը, էլեկտրական սերմազտիչը, էլեկտրակթի ագրեգատը, ինկուբատորը։*

*Սուրիկը մոտեցավ էլեկտրական տրակտորին։ Դա թրթուրավոր մի հսկա էր։ Էքսկուրսավարը բացատրում է, որ այժմ մեր երկրի շատ կոլտնտեսություններում հիսունինը տեսակի աշխատանք էլեկտրիֆիկացվել է։ Էլեկտրականությունը գյուղատնտեսական աշխատանքներում աստիճանաբար սկսում է առաջնակարգ տեղ գրավել։*

*Հաջորդ դահլիճներում Սուրիկն ու հայրը մեծ հետաքրքրությամբ դիտեցին քառասուն ապարատից բաղկացած ավտոմատ հեռախոսային կայանը, ապա փոքրիկ ռադիոտրանսլյացիոն հանգույցը։*

*Տղային շատ դուր եկան այն մեքենաները, որոնցով խուզում են ոչխարներին, կաթ են մշակում՝ պանիր և յուղ պատրաստելու համար։*

*— Ամեն ինչ մեքենայով են անում,— մտածեց Սուրիկը,— հողը մեքենայով են վարում, ցանքը, փխրեցումը, ջրելը մեքենայով են կատարում, պարարտացումը, բերքահավաքը... ամեն ինչ մեքենայով։*

*Մեքենայի ու ավիացիայի միջոցով էլ կոլտնտեսականները պայքարում են վնասատուների ու հիվանդությունների դեմ։*

*— Տրակտորը, կոմբայնը և մյուս մեքենաները մեր կոլտնտեսականների լավագույն օգնականներն են,— մտածում էր Սուրիկը։*

*Այսպես ավարտեց նա էքսկուրսիան Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մեխանիզացիայի և էլեկտրիֆիկացիայի պավիլիոնում։*

## ԱՇՈՒՆ

Մեղմ ու ճնճղագին
Խաշամն է խշշում,
Անտառում կրկին
Աշուն է, աշուն։
Խաշամով լցված
Գետակն է վշշում
Ու ճուշում կամաց՝
— Աշո՜ւն է, աշուն։

Կռունկն էլ վերջին
Սուզվեց մշուշում
Կանչով սրտագին.
— Աշո՜ւն է, աշուն։
Մարող ածխի պես
Արևն է մուժում
Մոխրանում ասես...
Աշուն է, աշուն։

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ
(Նոյեմբերյանի շրջան, Կոթի գյուղի դպրոցի աշակերտ)

# Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ

Վերխնյայա Տրոիցա գյուղը մեծ չէր. ուներ ընդամենը քառասունյոթ տնտեսություն, բայց հողը չէր բավարարում գյուղացիներին: Նրանցից շատերն ստիպված էին թողնել հայրենի գյուղը և վաստակ որոնելու համար թափառել քաղաքից քաղաք: Վաստակի էր գնում նաև Միշայի հայրը՝ Իվան Կալինիչը: Տնտեսության ամբողջ հոգսը ընկնում էր մոր՝ Մարիա Վասիլևնայի ուսերին: Երեխաների մեջ ամենամեծը վեց տարեկան Միշան էր, որը պետք է օգներ մորը, խնամեր իրենից փոքրերին:



Միշան սովորելու մեծ ցանկություն ուներ, բայց գյուղում դպրոց չկար: Երեխաներին գրել-կարդալ էր սովորեցնում մի պաշտոնաթող զինվոր: Ինը տարեկան հասակից Միշան մեծ եռանդով սկսում էր հաճախել այդ «դպրոցը», որը գտնվում էր մի անծխնելույզ տնակում: Նա վարժ կարդալ սկսեց սովորել տասնմեկ տարեկան հասակից, երբ ընդունվեց զեմստվոյի դպրոցը: «Այնտեղ ես հարձակվեցի ուսման վրա, ինչպես քաղցածը՝ հացի» — հետագայում գրում է նա:

Միշան այնքան ընդունակ և աշխատասեր երեխա էր, որ կես տարվա ընթացքում ավարտեց երկու դասարան: Տասնչորս տարեկան հասակում նա վերջացրեց դպրոցը:

Որպես ընտանիքի ավագ որդին, Միշան պետք է մտածեր վաստակի մասին: Եվ ահա նա աշխատում է կալվածատեր Բոլոտովսկու տանը, որպես ծառայող: Շուտով կալվածատիրոջ ընտանիքը փոխադրվում է Պետերբուրգ և Միշային տանում իր հետ:

Խուլ, հետամնաց գյուղից եկած պատանու համար Պետերբուրգը հեքիաթային աշխարհ էր թվում: Միշան լայն բացած աչքերով նայում էր այդ նոր՝ չտեսած աշխարհին: Նա ուզում էր իմանալ, ըմբռնել իրեն շրջապատող ամեն մի երևույթ: Չորս տարի ծառայելով այդ տանը, Միշան կարդում է կալվածատիրոջ գրադարանի գրեթե բոլոր գրքերը, կարդում է ռուս կլասիկների գործերը, ինչպես նաև բնագիտության, պատմության, փիլիսոփայության և ֆրանսիական ռևոլյուցիայի վերաբերյալ բազմաթիվ գրքեր:

Նրան մի առանձին ուժով ձգում էր բանվորական կյանքը: 1893 թվականին տասնութամյա պատանին ընդունվում է «Հին արսենալ» գործարանը, որպես աշակերտ: Այստեղ նա սերտորեն կապվում է բանվորական ռևոլյուցիոն ընդհատակյա խմբակների հետ: Այդ ժամանակվանից էլ սկսվում է Միխայիլ Իվանովիչ Կալինինի ռևոլյուցիոն կյանքի ուղին:

Սակայն այդ փոքր գործարանում կատարած քաղաքական աշխատանքը չի բավարարում երիտասարդին: Նա ձգտում է խոշոր գործարան, որպեսզի սուզվի ռևոլյուցիոն աշխատանքի մեջ: Եվ ահա Կալինինը Պուտիլովյան գործարանում է, թնդանոթային արհեստանոցի խառատ: Նա մտերմանում է այնպիսի մարդկանց հետ, որոնց նա կարող էր հաղորդել իր մտքերը, տրամադրությունները, ռևոլյուցիոն աշխատանք կազմակերպելու ծրագրերը: Մ. Ի. Կալինինը և Ի. Կուշնակովը ստեղծում են խմբակներ, կապ են հաստատում Վ. Ի. Լենինի հիմնած «Բանվոր դասակարգի ազա-

տագրության պայքարի միության» հետ, քաղաքական աշխատանք են ծավալում ուրիշ գործարանների ու ֆաբրիկաների բանվորների շրջանում:

1899 թվականի հունիսին Կալինինի ղեկավարած խումբը կազմում և տարածում է Ռաշկինի գործարանի բանվորներին ուղղված մի թռուցիկ և գործադուլի է հանում նրանց: Գործադուլն ավարտվում է բանվորների հաղթանակով: Սա ոգևորում և ոտքի է հանում շատ ձեռնարկությունների և ամենից առաջ Պուտիլովյան գործարանի բանվորներին: Այդ ժամանակ Մ. Ի. Կալինինը վիրխարի եռանդ է ցուցաբերում. կազմակերպում է հավաքներ, որտեղ հանդես է գալիս կրակոտ ճառերով, թռուցիկներ է տարածում: Կալինինի կազմած թռուցիկներից մեկում ասվում է. «Հիշեցեք, որ մենք մի այնպիսի ուժ ենք, որը ճանաչում և որից վախենում է կառավարությունը: Մենք ոչինչ չունենք կորցնելու, իսկ նվաճել կարող ենք ամբողջ աշխարհը»:

Շուտով ցարական ոստիկանները ձերբակալում են Կալինինին և «Կենտրոնական խմբի» աչքի ընկնող մյուս գործիչներին: Տաս ամիս բանտում մնալուց հետո Կալինինը արտաքսվում է Թիֆլիս:

1900 թվականի օգոստոսին Թիֆլիսում ծավալված երկաթուղային բանվորների խոշոր գործադուլին Կալինինը ակտիվ մասնակցություն է ցույց տալիս:

Մի քանի ամիս հետո Կալինինը Տալլին քաղաքում է՝ «Վոլտա» գործարանի բանվորների շրջանում: Շատ չանցած նա գնում է Պետերբուրգ: Այստեղ ոստիկանությունը ձերբակալում է նրան և որոշում աքսորել Սիբիր: Բայց այդ ժամանակ սկսված ռուս-ճապոնական պատերազմի պատճառով նրան աքսորում են ավելի հյուսիս՝ մի խուլ գյուղաքաղաք: Բայց նույնիսկ այս հեռավոր աքսորավայրում նա չէր դադարեցնում ռևոլյուցիոն աշխատանքը: Այստեղ նա գլխավորում է աքսորյալների բողոքը և ցույց կազմակերպում:

Անճկուն ռևոլյուցիոները չի կարողանում հեռու մնալ բանվորական միջավայրից: Նա գաղտնի կերպով գալիս է Պետերբուրգ, անմիջապես կապվում է բոլշևիկյան կենտրոնի հետ և ակտիվորեն մասնակցում ռևոլյուցիոն պայքարին: Ոստիկանների ձեռքը չընկնելու համար նա նորից աշխատանքի է ընդունվում Պուտիլովյան գործարանում, որտեղ եղել էր վեց տարի առաջ:

Հետևելով Վ. Ի. Լենինի ցուցումներին, Կալինինը մասսաներին կոչ է անում նախապատրաստվել զինված ապստամբության համար, ստեղծում է մարտական ջոկատներ: Անձամբ ինքն էր ղեկավարում այն խումբը, որը պետք է պայթեցներ Նիկոլաևյան երկաթուղու կամուրջը: Այդ կամուրջի վրայով պետք է անցնեին գվարդիական գնդերը՝ Մոսկվայի ապստամբությունը ճնշելու համար:

Ցարական կառավարությանը հաջողվում է ճնշել Մոսկվայի ապստամբությունը: Փակվում է նաև Պուտիլովյան գործարանը: Աշխատանքից հեռացվածների ցուցակի մեջ առաջինը Կալինինն էր:

Այնուհետև նա մերթ գյուղում է, մերթ քաղաքում: Որտեղ աշխատանքի է ընդունվում՝ հեռացնում են, ձերբակալում:

Սակայն դրանք չեն կարողացել ընկճել Կալինինի կամքը: Նա համառորեն հաղթահարում էր բոլոր դժվարությունները և պայքարում ժողովրդի ազատագրության համար:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Մ. Ի. Կալինինն ընտրվում է Պետերբուրգի Քաղաքային վարչության նախագահ: Պետերբուրգում դրությունը ծանր էր. ձեռնարկություններում կատարյալ քաոս էր տիրում. ծառայողները լքում էին աշխատանքը, չէին ուզում ենթարկվել սովետական նորաստեղծ իշխանությանը: Կալինինը ցուցաբերում է մեծ նախաձեռնություն և տոկունություն: Նա ելույթներ է ունենում քաղաքի և նրա շրջակայքի գործարաններում: Բոլոր բանվորները ճանաչում էին Կալինինին, հավատում, սիրում նրան: Նրանց համար Կալինինը ոչ միայն ղեկավար էր, այլև հարազատ մարդ, սրտակից ընկեր: Նրան ճանաչում և սիրում էր նաև մեր երկրի բազմամիլիոն գյուղացիությունը: Լենինի առաջարկությամբ 1919 թվականին Կալինինը ընտրվում է Համառուսական Կենտրոնական Գործադիր Կոմիտեի Նախագահ, իսկ հետագայում՝ Սովետական Միության Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ:

Քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին, երբ սովետական երկիրը վտանգի մեջ էր, սովն ու կարիքը տանջում էին մարդկանց, Կալինինը անձամբ գլխավորում էր «Հոկտեմբերյան ռևոլյուցիա» ագիտացիոն-հրահանգչական գնացքը: Նա մեկնում էր ճակատային շրջանները, ոգևորում զինվորներին և բնակչությանը:

Չնայած իր խոր ծերությանը, Հայրենական պատերազմի տարիներին, Կալինինը ուժ ու եռանդ չէր խնայում Հայրենիքի պաշտպանության գործի համար: Նա լինում էր զորամասերում, գործա-

ռաններում, կոլտնտեսություններում, ելույթներ էր ունենում խորհրդակցություններում:

Ընդհանրապես Կալինինը մեծ տեղ էր տալիս երկրում կատարած շրջագայություններին «Որպեսզի չկտրվել մասսաներից, որպեսզի իմանալ, թե ինչպես են ապրում բանվորներն ու գյուղացիները, ես շրջագայում եմ, խոսում մարդկանց հետ»:

Մ. Ի. Կալինինը Սովետական երիտասարդության ամենամոտ բարեկամներից մեկն էր: Նա շատ էր հետաքրքրվում կոմերիտական և պիոներական կազմակերպությունների կյանքով: Զանազան առիթներով գրած նրա հոդվածները, արտասանած ճառերը մեծ դեր են խաղացել աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործում: Կալինինը մեծ ուշադրություն էր դարձնում դպրոցական հարցերին: Նա աշակերտներին խորհուրդ էր տալիս հարգել ուսուցիչներին, խնամքով կատարել նրանց տված հանձնարարությունները և խորապես տիրապետել գիտությանը ու տեխնիկային:

Կալինինը քսանյոթ տարի ղեկավարում էր Սովետական պետության գերագույն օրգանը՝ Գերագույն Սովետը: «Համամիութենական ավագ» — այսպես էին անվանում նրան:

Կալինինը պարգևատրված էր Լենինի շքանշանով, իսկ 1944 թվականին նրան շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում:

Մ. Ի. Կալինինը մեռավ 1946 թվականի հունիսի երեքին յոթանասունմեկ տարեկան հասակում:

Այս տարվա նոյեմբերի քսանին լրանում է մեծ Լենինի հավատարիմ զինակից, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ Միխայիլ Իվանովիչ Կալինինի ծննդյան 80 տարին:

Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## ՊԱՊՆ ՈՒ ԹՈՌԸ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Լայն փողոցով, շարքերի հետ
Փոքրիկ Աշոտն է քայլում,
Նրա պայծառ աչքերի մեջ
Երջանկություն է փայլում:
Շուտով, շուտով Աշոտն անա
Իրենց տան մոտ կհասնի,
Եվ պապիկը հանկարծ նրան
Պատշգամբից կտեսնի:
Աշոտիկն է երգում խրոխտ,
Դրոշակը իր ձեռքին...
Երբ որ հասան իրենց տան մոտ,
Ձեռքով արեց պապիկին:



*Նկ. Վ. ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒ*

Պապն է նայում երկար, երկար՝
Իր երջանիկ թոռնիկին.



— Ա՛յ թե խելոք տղա է, հա՞...
Զվարթանում է հոգին:
Պապը թեև թոռնիկի հետ
Շքերթի մեջ չի քայլում,
Բայց զգում է իրեն ջահել,
Երբին հպարտ է նայում:
Պապիկն էլ է կռիվ մղել
Հոկտեմբերյան օրերին,
Որ միշտ ազատ, ուրախ ապրեն
Մանուկները սիրելի:

# ՎԱՐՊԵՏԸ

Ա. ԻՆՃԻԿՅԱՆ

(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)



ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ (մեդալիոն).
Գործ՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

— Վարպետը, մեր սիրելի վարպետը...

Ամենքը, մտերմաբար, այսպես են անվանում մեր մեծ բանաստեղծ Ավետիք Իսահակյանին։ Մեծ թե փոքր նրա անունը արտասանում են խորին պատկառանքով և հպարտությամբ։

Ավետիք Իսահակյանը հայ ժողովրդի բազմադարյան գրականության գագաթներից է։

Իսահակյանը ծնվել է 1875 թվականի հոկտեմբերի երեսունին Ալեքսանդրապոլում (այժմ՝ Լենինական)։ Քաղաքից ոչ-շատ հեռու, Ղազարապատ գյուղում, որն այժմ կոչվում է Իսահակյան, բանաստեղծի հայրն ուներ մի ջրաղաց։ Այստեղ է անցնում ապագա բանաստեղծի մանկությունն ու պատանեկությունը։

Մանթաշի հազարերանգ ծաղիկները, վեհանիստ Արագածը, Ախուրյանի մերթ պղտոր, մերթ ջինջ ջրերի վրա թեքված ուռիները, ժողովրդական երգերն ու հեքիաթները, անցյալի ճարտարապետական հուշարձանները վառում, բորբոքում են բնության սիրահար, նրբազգաց ու խոհուն պատանու բանաստեղծական երևակայությունը։

Երբ նա յոթ-ութ տարեկան էր, ծնողները նրան տալիս են Շողո-բաջու «ուսումնարանը», որ ոչնչով չէր տարբերվում տեր-Թոդիկի «դպրոցից»։

Այստեղ Իսահակյանը մնում է չորս-հինգ ամիս, հետո ընդունվում է Ալեքսանդրապոլի հայոց հոգևոր, ապա ռուսաց, իսկ մի տարուց հետո՝ Հառիճի վանքի երկդասյան դպրոցը։ Դպրոցական պարապմունքներից ազատ ժամերին հարցասեր և ուսումնատենչ պատանին զբաղվում էր ընթերցանությամբ։

1889 թվականին Իսահակյանը մեկնում է Էջմիածին և ընդունվում Գևորգյան ճեմարանը։ Ճեմարանի ռուսաց լեզվի դասատուն՝ այդ ժամանակ արդեն հռչակված բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանը, քաջալերում է իր աշակերտի գրական առաջին քայլերը։ «Մի օր,— պատմում է Իսահակյանը,— 1892 թվականին, ցույց տվի մի նոր ոտանավոր. «Ծաղիկ էի նորաբողբոջ, սարի լանջում, երկնի տակ...»։ Կարդաց ոտանավորս, նորից կարդաց, և քաղցր ժպիտով ասաց, ուսիս թեթև խփելով. «Կեցցես, հիմա բանաստեղծ ես»։ Ուրախությանս սահման չկար. ամուր սեղմեցի նրա ձեռքը և թռա ընկերներիս մոտ»։ Հովհ. Հովհաննիսյանի հավանությանն արժանացած այդ բանաստեղծությունը տպագրվում է նույն թվականին «Տարազ» շաբաթաթերթի դեկտեմբերի համարում։ Այնուհետև, Իսահակյանի բանաստեղծությունները տպագրվում են գրական մամուլի էջերում։

Գևորգյան ճեմարանի հինգերորդ դասարանից դուրս գալով, 1893 թվականի ամռանը Իսահակյանը մեկնում է Գերմանիա՝ ուսումը շարունակելու։

1897 թվականի վերջերին Ալեքսանդրապոլում լույս է տեսնում Իսահակյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն՝ «Երգեր ու վերքեր» վերնագրով։ Երիտասարդ բանաստեղծին ջերմորեն ողջունում և խրախուսում են Պերճ Պռոշյանը և Ղազարոս Աղայանը։ Իսահակյանը հենց առաջին գրքով ջերմ ընդունելություն է գտնում և դառնում մեր ամենաժողովրդական բանաստեղծներից մեկը։

Ժողովուրդը Իսահակյանի ստեղծագործություններում տեսավ իր կյանքի ու տառապանքի ճշմարիտ արտացոլումը։ Բանաստեղծն իր սրտահույզ երգերում արտահայտում էր «դառն դատող դատարկ նստող», «աշխարհքի խորթ տղերքի» տրտունջն ու բողոքը բուրժուական անարդար կարգերի դեմ։

Իսահակյանին խոր վիշտ էր պատճառում

նաև օտար նվաճողների լծի տակ ճնշված իր ժողովրդի և հայրենիքի տառապանքը.

> Է՜յ, ջան—հայրենիք, ինչքա՜ն սիրուն ես.
> Սարերդ կորած երկնի մովի մեջ.
> Ջրերդ անո՛ւշ, հովերդ անո՛ւշ,
> Մենակ բալեքդ արուն-ծովի մեջ:

Ցարիզմի և բուրժուազիայի տիրապետության դաժան տարիներին բանաստեղծը «բյուր ուղիներով» որոնում էր ճշմարտությունը, բայց չէր գտնում։ Նա տեսնում էր, որ ամենուրեք ժողովուրդը ենթարկվում է անողոք կեղեքումների ու հալածանքների. աշխարհի բոլոր բարիքներն ստեղծող աշխատավորը «չոր քար է կրծում իր հացի հանդեպ». օրենքն ու իշխանությունը հովանավորում, պաշտպանում են հարուստներին ու հզորներին և ճնշում ու ճզմում աղքատներին ու թույլերին։ Ահա ինչու Իսահակյանի նախասովետական շրջանի ստեղծագործություններից շատերը այնքան տխուր են և սրտաճմլիկ։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան ժողովրդին ազատագրեց, նրան դուրս բերեց «անդուռ ու անել» վանդակից։ Իսահակյանը վերադարձավ իր ազատ ժողովրդի գիրկը, իր վերածնված հայրենիքը։ Նոր եռանդով ու ոգևորությամբ նա սկըսեց ստեղծագործել։

Ավելի քան վաթսուն տարի է, որ գրում է Իսահակյանը։ Նա մեզ պարգևել է բազմաթիվ գրական գոհարներ՝ բանաստեղծություններ ու առակներ, լեգենդներ ու պոեմներ, պատմվածքներ ու հեքիաթներ. ո՞ւմ հայտնի չեն նրա «Երգեր ու վերքերը», «Ալագյազի մանիները», «Աբու-Լալա-Մահարին», «Սասմա Մհերը», «Հավերժական սերը», «Համբերանքի չիբուխը», «Ուստա Կարոն» և մյուս ստեղծագործությունները։ Իսահակյանի երկերը թարգմանված են բազմաթիվ լեզուներով։ Դեռևս 1916 թվականին ռուս հայտնի բանաստեղծ Ալեքսանդր Բլոկը գրել է. «Իսահակյանը առաջնակարգ պոետ է. այդպիսի թարմ և անմիջական տաղանդ թերևս ամբողջ Եվրոպայում չկա»։

Իսահակյանի ստեղծագործությունները մեզ սովորեցնում են անձնվեր հայրենասիրություն և մարդասիրություն։ Նրանք լցված են ժողովուրդների եղբայրության, խաղաղության վսեմ գաղափարներով։ Իմաստուն վարպետը սովորեցնում է լինել ազնիվ, ճշմարտասեր, բարի, ընկերասեր և համեստ, լինել օգտակար։ Այդ գաղափարն է արտահայտում «Համբերանքի չիբուխը» հմայիչ պատմվածքի հերոսը՝ Օհան ամին, «Մարդը գնացական է, նրա լավ գործը՝ մնացական. ըսել է՝ ինքն է մնացական։ Ա՛յ, խոսքի օրինակ, էս շաքարը գցեցիր չայի մեջ՝ հալավ, կորավ, չկա, բայց չայն անուշցավ։ Էնպես էլ լավ մարդը... Նրա լավ գործը աշխարհքը կանուշցնե»։

Այդպես են նաև մեծ վարպետի սքանչելի ստեղծագործությունները. նրանք ազնվացնում են մեր զգացմունքները, բարձրացնում, վեհացնում են մեզ հոգեպես։ Նրանք մեր կյանքի մշտական և հավատարիմ ուղեկիցներն են։




ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Պիտի փարվիմ չհնաղ լանջիդ՝
Գարնան վարդով ցնծո՛ւն.
Եվ մայրական անհուն շնչիդ՝
Ցորեն արտով ծփո՛ւն:
Կանչում ես ինձ լուսաբարբառ
Քո սիրազեղ կոչով՝

Դեմքդ եմ տեսնում՝ նոր ու պայծառ,
Քո հնազեղ ոճով:
Վա՛ռ ու հզո՛ր քո ապագան
Կայծակում է իմ դեմ.
Դո՛ւ, հավերժող իմ Հայաստան,
Անուն քա՛ղցր ու վսե՛մ:



# Վախի վերջը



ՍՏ. ԶՈՐՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

1

Մի օր Վախը՝ աներևույթ ու անտես մի արարած, իր համար ապահով տեղ չգտնելով, գնաց մտավ մի թագավորի սիրտ։

— Սա շատ զենք ու զորք ունի, ինձ կպաշտպանի,— մտածեց։

Եվ Վախն իսկապես չէր սխալվում։ Թագավորի սրտում տեղավորվեց թե չէ՝ սա անհանգստացավ ու առանց պատճառի սկսեց մարդկանց բռնոտել, բանտերը գցել, աքսորել, սպանել։

— Էս ինձ պաշտպանելու համար է անում,— մտածում էր Վախը և ավելի էր դողում թագավորի սրտում։

Իսկ նրա դողից թագավորն ավելի էր անհանգստանում և կասկածոտ դառնում։ Նրան թվում էր, թե ամեն տեղ դավադիրներ կան, դարան մտած մարդիկ։ Դրա համար էլ պալատը շրջապատեց պարիսպներով, ամրակուռ բերդով ու ինքը փակվեց մեջը։ Փակվեց ու սկսեց ատել մարդկանց, հեռու մնալ նրանցից, որ հանկարծ չվնասեն իրեն։ Այդ պատճառով էլ պալատից դուրս էր գալիս զինված թիկնապահներով, անգամ իր բակում, պալատում, իր գահասրահում թիկնապահներ էր կարգել, մինչև իսկ ննջարանում առանց թիկնապահի չէր քնում։

Նրան թվում էր, թե իր սպանած, աքսորած մարդկանց հարազատները ամեն տեղ հետևում են իրեն, թվում էր, թե փորում են գետինը, որ անցք բացեն դեպի պալատ և գան իրեն սպանեն... Ու դրա համար նորից էր բռնոտում մարդկանց, բանտերը գցում, աքսորում, սպանում...

— Էս ինձ պաշտպանելու համար է անում,— դարձյալ մտածում էր Վախը և ավելի դողում բռնապետի սրտում։

Իսկ բռնապետը դրանից նորից էր անհանգստանում, կասկածում. պարիսպներն ամրացնում էր, թիկնապահները շատացնում...

Բայց ինչ էլ արավ բռնակալը՝ իրեն պաշտպանելու համար, չօգնեց։ Նրա բռնությունից զայրացած ժողովուրդը մի օր հարձակվեց նրա պալատի վրա և սպանեց նրան։ Իսկ վախը նրա սրտից դուրս գալով մտավ մի



...առանց թիկնապահի չէր քնում:

հարուստի սիրտ։

2

Ո՞վ էր այդ հարուստը։ Դա մի մարդ էր, որ ինչ ձեռն էր ընկնում՝ ոսկի էր դարձնում և պահում իր գանձատնում, երկաթից շինած մի հատուկ տեղ, ուր միայն ինքն էր մտնում։ Բայց ամեն անգամ այդտեղ մտնելիս՝ նա յուրայիններին ու ծառաներին հեռացնում էր տնից, որ չտեսնեն՝ ուր է մտնում ինքը կամ ինչպես է մըտնում։ Իսկ ինքը մտնելով իր գաղտնի գանձատունը, սիրով, խնամքով շոշափում էր այդտեղ շարված ոսկե դրամները, ոսկե անոթներն ու ոսկե զարդերը։ Նայում էր, շոշափում, երբեմն էլ առնում ափերի մեջ և հիանում նրա փայլով, նրանց գեղեցկությամբ և լիակշիռ ծանրությամբ։

Եվ ահա մի օր, այն օրը, երբ Վախը մտավ նրա սիրտը, նա բոլոր տնեցիներին ու ծառան-

րին ուղարկեց զանազան կողմեր և ինքը գնաց գանձատուն ստուգելու՝ ոսկիներն իրենց տե՞ղն են, թե՞ գողեր են մտել-տարել։

Մտավ ու սովորականի պես հափշտակված սկսեց դիտել իր հարստությունը, ձեռով չափել նրանց կշիռը, նայել ամեն կողմից։ Բայց դա նրան չէր հանգստացնում. մտածում էր, թե ինչպես անի, որ գանձատան դուռն ավելի ամուր լինի, և ոչ ոք չիմանա իր գանձի տեղը։ Մտածեց, մտածեց, և որոշեց գանձատան դուռն ավելի ամրացնել, որ եթե մի օր գող մտնենա՝ չկարողանա բացել։ Ու այդ միտքը պաշարեց նրան։ Սկսեց ինքն իր ձեռքով ամրացնել դռան փակերը ներսից, դրսից։ Մի փակը դնում էր, ապա անցնում մյուսին, դա էլ ամրացնում էր՝ անցնում երրորդին։ Հետո, ներս մտնելով, ցանկացավ բոլոր փակերը փակել մի բանալիով, մի այնպիսի բանալիով, որ ոչ մի գող չէր կարող շինել...

Թե որքան տևեց այդ աշխատանքը՝ նա ինքն էլ չիմացավ։ Երբ ցանկացավ դուրս գալ՝ տեսավ գանձատան դուռը չի բացվում։ Ինչ էլ արավ՝ երկաթե դուռը մնաց փակ։ Հանգստացավ մի առ ժամ ու նորից փորձեց բանալ։ Չէ, դուռը գարձյալ չբացվեց...

Բայց, արի տես, նա չէր էլ ուզում ձայն տալ, իմացնել, թե ինքը փակվել է, որովհետև Վախը շարունակ շշնջում էր.

— Մի՛, մի՛ անի։ Եթե տնեցիները, ծառաները



Տեսան իրենց տերը մեռած, ոսկիների մեջ ընկած...

ոսկու տեղը իմանան, վատ կլինի...

Ու անխոս աշխատում էր դուռը բացել ինքը։ Բայց ինչ էլ անում էր՝ նորից չէր բացվում։

Եվ այսպես երկու-երեք օր, մի շաբաթ շարունակեց դուռը բանալու իր փորձերը։ Իզուր։ Դուռը չէր բացվում։

Իսկ տնեցիներն այդ օրերին, սաստիկ անհանգստացած, փնտրում էին նրան այստեղ, այնտեղ, տան ներսը, դուրսը։ Չկար ու չկար։ Շատ փնտրելով՝ եկան հասան գաղտնի գանձարանի դուռը։

Հարուստի կինը հրամայեց բացել այդ երկաթե դուռը և նայել ներս։ Ծառաները կատարեցին նրա հրամանը։

Երբ դուռը խորտակեցին ու մտան ներս՝ տեսան իրենց տերը մեռած, ոսկիների ու ոսկեղենների մեջ ընկած, կողքին՝ մի թուղթ։ Զգուշությամբ վերցրին և կարդացին.

«Այսքան փողի, այսքան ոսկու մեջ ես մեռա սովից ու վախից»...

Այստեղ Վախը, իր անունը լսելով, աննկատելի իրեն գցեց փողոց և մտավ առաջին պատահած մարդու սիրտը։ Հետո պարզվեց, որ այդ մարդը քաղաք եկած մի գյուղապետ էր։

3

Ո՞վ էր այդ գյուղապետը և ինչի՞ էր եկել քաղաք։ Դրա պատմությունը մի քիչ հեռվից է սկսվում։

Սուլթանը մի ծեր փիղ ուներ իր կենդանաբանական այգում. ծերությունից դա այնքան էր տգեղացել, կնճռոտվել, այլանդակվել, որ սուլթանը միշտ տհաճություն էր զգում նրան տեսնելիս։ Այդ պատճառով մի օր կարգադրեց իր վեզիրներից մեկին, որ դրան՝ այդ պառավ փղին ուղարկեն մի գյուղ և այնտեղ կերակրեն, պահեն մինչև սատկելը։

Այդպես էլ անում են։ Ուղարկում են հենց այս գյուղապետի մոտ, որ եկել էր քաղաք։ Բայց նրա գյուղը շատ աղքատ էր, և գյուղացիք, որ հազիվ էին հաց ու պանրով ապրում, ստիպված էին օրական քսան փութ կեր տալ փղին։

Այդպես կերակրեցին մի ամիս, երկու ամիս, իսկ երրորդ ամսին, տեսնելով, որ գյուղի պաշարը հատնում է և չեն կարող իրենց բերանից կտրել, փղին կերակրել, որոշեցին քսան հոգով գալ քաղաք՝ նահանգապետի մոտ և խնդրել, որ փիղը տանեն իրենց գյուղից, որովհետև իրենց բաժին ուտելիքն էլ տալիս են նրան։

Եվ ահա այդքան մարդ, գյուղապետի գլխավորությամբ, եկել էին քաղաք և փողոցով գնում էին նահանգապետի՝ Վալիի տուն, երբ Վախը մտավ գյուղապետի սիրտը։

Գյուղացիք գնացին նահանգապետի տուն և խնդրեցին, որ նա ընդունի իրենց։

— Սպասեցեք,— ասաց նահանգապետը։

Գյուղացիները սպասեցին երկար, և երբ վերջապես նա եկավ՝ տանինը գյուղացին ետ կանգնեցին, գյուղապետին առաջ դզեցին, որ նա, որպես քաջ մարդ, ինքը խոսի նահանգապետի հետ։

— Ի՞նչ եք ցանկանում,— դիմեց Վալին գյուղապետին։

Գյուղապետը պատմեց, թե ինչպես մեծ սուլթանը պատիվ է արել և իրենց գյուղն է ուղարկել իր ազնիվ փիղը՝ պահելու և կերակրելու...

— Է՛, լավ. ես այդ գիտեմ,— ընդհատեց նրան նահանգապետը.— հիմա ի՞նչ եք ուզում, դժգո՞հ եք այդ պատվից։

— Ոչ, ոչ, աղա՛ Վալի,— շփոթվեց գյուղապետը։— Ընդհակառակը. գյուղը խնդրում է, որ մեծ սուլթանը այդ փղի ընկերոջն էլ ուղարկի, որ... որ... ազնիվ փիղը մենակ չտխրի...


...ստիպված էին օրական հսան փութ կեր տալ փղին։

Գյուղապետն այդ ասաց այնքան հուզված, որ Վախը չկարողացավ իրեն պահել և ծիծաղեց նրա սրտում։

КԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ

# «ՂՈՒԿԱՍՅԱՆ»

Ընդունակ, համեստ ու աշխատասեր աշակերտ էր պատանի Ղուկասը։ Նա միշտ երազել, խորհել է մարդկության երջանիկ ապագայի մասին։ Գուցե հենց դա է եղել պատճառը, որ նա մի առանձին սեր է տածել դեպի աստղազարդ երկինքը, բուռն կերպով ձգտել իմանալու տիեզերքի գաղտնիքները։

Ղուկաս Ղուկասյանը իր հավատարիմ ընկերների հետ միասին Հայաստանում հիմնադրեց կոմունիստական երիտասարդական «Սպարտակ» կազմակերպությունը, ամենաակտիվ մասնակցություն ունեցավ Մայիսյան ապստամբության նախապատրաստման գործում։

Կարսում և Սարիղամիշում Ղուկասը մտնում էր զորամասերը, զինվորներին նախապատրաստում առաջիկա ապստամբությանը։ Նա Կարսի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեի նախագահն էր։




Կամքի անխորտակ ուժ և տոկունություն ուներ նա։ Ո՛չ բանտային խցի խեղդիչ օդը, ո՛չ սովը, ո՛չ դաշնակցական կոմիսարի մտրակների սուր հարվածները չէին ընկճում Ղուկասին։

— Բոլշևիկները անձնատուր չեն լինում,—ասում էր նա։

Նա, պարտիայի առաջադրանքով, ծպտված մտավ դաշնակցական բանակը և ռևոլյուցիոն մտքեր քարոզեց։

Որքան որ նա զգայուն էր դեպի աշխատավոր մարդը, նույնքան անողոք էր ռևոլյուցիայի դավաճանների նկատմամբ։

Կարսում, Ալեքսանդրապոլում և ամենուրեք բոլշևիկները կարողացել էր ժամանակավորապես ճնշել Մայիսյան ապստամբությունը։ Ղուկասը մի խումբ ընկերների հետ Արգինայի ձորում շրջապատված էր դաշնակցական բանդայի սև օղակով։ Բայց սեւս հուսահատությունն ու խավարը ցրելու համար, բեժ կրակ են վառում, և նրա շուրջը նստած երազում ու խոսում Մոսկվայի, Լենինի, գալիք լավ օրերի մասին։

— Կարմիր արևածագը լինելու է, անպայման լինելու է, ես մնանում եմ այդ հավատով։

Երևանի ուսանողական քաղամասի զբոսայգում, ծաղիկների ու կանաչների մեջ, երախտապարտ հայ ժողովուրդը բարձրացրել է իր արժանավոր զավակի գրանիտյա փառավոր հուշարձանը։

Այս ամենի մասին դուք կարող եք կարդալ գրող Ա. Հովսեփյանի՝ «Ղուկասյան» գրքույկում, որը Հայպետհրատը լույս է ընծայել «Նշանավոր մարդկանց կյանքը» սերիայով։

Գրքույկը գրված է ջերմ շնչով և կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։

ԱՐՄ. ԹԱՄԱԶՅԱՆ

## «ԶԻՍ—127» ԱՎՏՈԲՈՒՍԸ

Նայեցեք այս նկարին: Այսպիսի մի ավտոբուս այս տարի փորձնական երթ կատարեց Մոսկվա-Սիմֆերոպոլ խճուղիով: Այս մեքենան կահավորված է փափուկ բազկաթոռներով: Ուղևորը կարող է փոխել բազկաթոռի դիրքը և թիկնակի թեքությունը այնպես, որ քնելու համար հարմար լինի: Յուրաքանչյուր բազկաթոռի մոտ ականջակալներ են ամրացված: Ուղևորները ճանապարհին ռադիոհաղորդումներ են լսում Մոսկվայից և այլ քաղաքներից: Ճանապարհի փոշին և մոտորի գազերը ավտոբուսի ներսը չեն թափանցում, որովհետև դռներն ու լուսամուտները պինդ փակված են լինում: Մեքենայի ներսում պահպանվում է մշտական մի ջերմություն: Թարմ ու մաքուր օդը գալիս է հատուկ օդափոխիչի միջոցով: Ավտոբուսում դրված են ջեռուցման սարքեր, որ ձմռանը ճանապարհորդելիս ուղևորները չմրսեն: Լուսամուտների ապակիների վրա չորս կողմից փչում է տաք օդը, որպեսզի ուժեղ սառնամանիքների դեպքում դրանք չսառցապատվեն:



Ավտոբուսավարի խցիկում շատ մեխանիկական օգնականներ կան: Արգելակների որևէ խախտման դեպքում, ավտոմատ կերպով սկսում է աշխատել ճչյունային ազդանշանը և վարորդին հայտնում անկանոնության մասին:

Ավտոբուսը կարող է մեկ ժամում մինչև 100 կիլոմետր ճանապարհ անցնել: Մեքենայի կտուրին դրված է հզոր մի լուսարձակ, որը լուսավորում է ուղին:

«Զիմ-127» ավտոբուսը կառուցված է Ի. Վ. Ստալինի անվան ավտոգործարանում: Այս տարի գործարանը կթողարկի այսպիսի մեքենաների առաջին սերիան:

## 120 ՎՈԼՏ ՆԱՎԹԻ ԼԱՄՊԻՑ

Լամպային ռադիոընդունիչները հիմա գործում են նաև այն վայրերում, որտեղ էլեկտրականություն չկա: Սակայն երկար ժամանակ որպես էլեկտրական հոսանքի միակ աղբյուր ծառայում էին գալվանական էլեմենտներից կազմված մարտկոցները: Մեր գիտնականներն ու ինժեներները երկու տարի առաջ ռադիոլսողների համար ստեղծեցին հոսանքի նոր աղբյուր՝ ջերմաէլեկտրագեներատոր: Դրա համար նրանք օգտագործեցին նավթի սովորական «Մոլնիա» կոչված լամպը: Լամպը լուսավորում է շենքը և միաժամանակ տաքացնում է ջերմաէլեկտրագեներատորը, որի մեջ ջերմային էներգիան դառնում է էլեկտրական: Արդյունաբերությունն արդեն թողարկում է ջերմաէլեկտրագեներատորներ, որոնք երկու վոլտ լարվածությամբ հոսանք են տալիս: Ընդունիչը սնելու համար հոսանքի այդ լարվածությունը հատուկ սարքով՝ վիբրոձևափոխիչով բարձրացվում է մինչև 80—100 վոլտի: Բայց այդ սարքը ձեռնտու չէ, բարդ է: Բացի այդ, մեծ քանակությամբ էներգիա ծախսվում է անօգուտ: Դրա համար էլ հիմա նախագծված և պատրաստված է նոր ջերմաէլեկտրագեներատոր: Առանց լրացուցիչ սարքերի նա տալիս է երեք վոլտ լարվածություն ռադիոլամպերի շիկացման թելերի համար և մինչև 120 վոլտ լարվածություն անոդային շղթաների համար:

Ջերմաէլեկտրագեներատորը աշխատանքում շատ կայուն է, տալիս է մշտական լարվածություն, չի վախենում կարճ միացումներից:

## ԿՐԱԿԻ ՈՒ ԾԽԻ ՄԻՋՈՎ

Սև ծխի քուլաները փակել են ճանապարհը դեպի մոլեգնող կրակը: Բայց ջրցանի խողովակը ձեռքին մարդը հանգիստ անցնում է խեղդող ծխի միջով և ջրի հզոր շիթով հեռացնում է բոցը: Այդ մարդը գործնականում փորձում է նոր գյուտը՝ գազաջերմապաշտպան ապարատը, որ հորինել են ինժեներներ՝ Մ. Կրավցովը, Վ. Բալասյանը, Ա. Գնամմը և տեխնիկ Վ. Պոպկովը: Ռետինած խտահյուս գործվածքը և մետաղյա սկաֆանդրը, որի մեջ շրջապտույտ է կատարում սառեցրած օդը, մարդուն հուսալի կերպով պաշտպանում են կրակից ու ծխից:

Ապարատն ունի քիմիական կլանիչ, չոր սառույցով լցված երկու սառցարան, թթվածնով լիքը բալոն և էլեկտրական օդափոխիչ, որն աշխատում է ակումուլյատորների հոսանքով: Այս բոլորը ամրացված են սկաֆանդրին: Մարդու արտաշնչած օդը օդափոխիչը մղում է դեպի կլանիչ: Այդ օդը մաքրվում է, ինչպես հակագազում, հետո խառնվում է թթվածնին և մտնում սառցարանները: Մաքուր և սառը օդը օդափոխիչի միջոցով նորից մղվում է ապարատի մեջ:



Այսպիսի ապարատով մարդ կարող է երկու ժամ աշխատել շնչառության համար բոլորովին անպետք մթնոլորտում 1250° ջերմության մեջ: Օգտագործելով այդ սարքը, կարելի է նորոգել վառարանները և շոգեկաթսաները՝ ոչ լրիվ սառեցնելով դրանք:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԿՐՈՍՎՈՐԴ

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 4. Թերակղզի Եվրոպայում, 5. Հածանավ, որն իր ճամազարկով ազդարարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի սկիզբը, 6. Մերձարևադարձային կուլտուրա, 8 .Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի հերոսներից, 9. Լիճ Սովետական Միությունում, 14. Արդարադատության օրգան, 17. Սովետական պետության ականավոր գործիչ, որը մահացել է 1946 թվականին, 18. Հայ գրող, 19. Նեղ ճանապարհ, 30. Հ. Թումանյանի պոեմներից, 21. Սովետական ռեսպուբլիկաներից մեկի մայրաքաղաք, 22. Սովետական ռեսպուբլիկա, 27. Առարկա ցույց տվող խոսքի մաս, 29. Ավտոնոմ մարզ Կովկասում, 30. Առաջին հայ պարբերական թերթը, 33. Գրենական պիտույք, 34. Սպորտի ձև, 36. Բիզեի օպերաներից, 37. Ղ. Աղայանի հեքիաթներից մեկը, 38. Հերոս-քաղաք:

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Կոմունիստական երիտասարդական առաջին կազմակերպությունը Հայաստանում, 2. Սովետական ռեսպուբլիկաներից մեկի մայրաքաղաք, 3. Միջնադարի մեծ գիտնական, որին հոգևորականները այրեցին խարույկի վրա, 5. Լեռ Հայաստանում, 7. Ծաղկի տեսակ, 8. Սովետահայ գրող, 10. Մասնիկ, որն ավելանալով բառի վրա, փոխում է նրա իմաստը, 11. Սովետական Միության մարշալ, 12. Հայկական ժողովրդական երգ, 13. Քաղաք Հայաստանում, 15. Ռուս մեծ զորավար, 16. Ուսումնական սենյակ, 23. Փոխադրական միջոց, 24. Վոլգայի վտակներից, 25. Ռուս մանկական գրող, 28. Կաղնիների անտառ, 31. Արտադրության մասնագետ, 32. Սովետահայ գրող, 35. Պտղատու ծառ:

*Կազմեց Գ. ԱՆԱՆՅԱՆ*

## ՌԵԲՈՒՍ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Սանրում է նա, սանր չի,
Թեև մեծ է, ծանր չի,
Աշխատում է միշտ հանդում,
Հին ընկերն է գերանդու:

---

Աչքեր ունի, չունի լույս,
Հողն է փորում սուս ու փուս,
Միշտ ապրում է գետնի տակ,
Հագին ընտիր մի մուշտակ:

*Մ. ԿՈՐՑՈՒՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*Մեր ամսագրի 1955 թվականի 5-րդ և 6-րդ համարներում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են.*

«Պիոներ» № 5.

1. Վիկտորինա

*1. Եմելյան Պուգաչով (1773—1775 թ. թ.), 2. Արամ Խաչատրյան. «Սպարտակ», 3. Եգիպտոսում՝ 5000 տարի առաջ, 4. Ուրարտու, 5. Հոմերոսի «Իլիականը» և «Ոդիսականը», 6. Նևա, 7. Կոպեռնիկոս, Ջորդանո-Բրունո, Գալիլեյ, 8. Մագելլանը՝ 1448 թվականին, 9. Դաշա Սևաստոպոլսկայան, 10. Վլադիվոստոկը՝ 1860 թվականին, Խաբարովսկը՝ 1858 թվականին։*

2. «Գրել անսխալ»

*Ուղղահայաց.— 1. Ձի, 2. զայրանալ, 3. աճ, 4. չիթ, 6. ինձ, 8. տալաս, 9. տիկին, 11 հորթ, 12 կուժ, 13. ճաք, 14. բուրդ, 18. հոգեթով, 20. անընտել, 24. տառ, 25, արկ, 28. ամբարիշտ, 30. զորք, 31. աղոտ, 32. պահակ, 34. ածազ, 35. որբ, 36. լակ, 40. քուն, 42. լուռ, 47. ուլթ, 49. ուժ։*

*Հորիզոնական.— 4. չիր, 5. ճճի, 7. լի, 8. այտ, 10. նա, 12. կտրիճ, 15. բոթ, 16. թուլակամ, 17. գութ, 19. ժանիք, 21. պոռթկալ, 22. սան, 23. հարգանք, 26. գեղջկական, 27. երփներանգ, 29. հորձանք, 31. ամպ, 33 խելահեղ, 35. ողբալ, 37. երգ, 38. ցրտահար, 39. բաղ, 41. թորակ 43. ձու, 44. տիկ, 45. ուշ, 46. նուռ, 48. փուռ։*

Պիոներ № 6.

*1. Դիտող պիոներները.— Պետք է ուշադրություն դարձնել շոգեքարշի ծխի վրա։ Եթե գնացքը կանգնած լիներ, ապա ծուխը կգնար քամու ուղղությամբ, եթե գնացքը առաջ է ընթանում, և ծուխը շոգեքարշից բարձրանում է ուղիղ վերև, ուրեմն գնացքն ունի քամուն հավասար արագություն, այսինքն մեկ վայրկյանում յոթ մետր, կամ մեկ ժամում քսանհինգ կիլոմետր։*

*Ճիշտ պատասխանել են՝ Գ. Մարտիրոսյանը, Լ. Եփրեմյանը, Լ. Քալանթարյանը (Երևան), Ս. Պողոսյանը (Շամշադին), Ռ. Մինասյանը (Ղափան), Ս. Փառավյանը (Ղուկասյան), Ի. Մնացականյանը (Կոտայք), Կ. Դրամբյանը (Կիրովականի շրջան) և ուրիշներ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Խոսք պիոներներին — Ն. ԶԱՐՅԱՆ
2. Երեսունհինգ տարի — Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ . . . 1
3. Աշնան երգ — Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ . . . . . 3
4. Տասնմեկ տարի հետո — Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ . . 4
5. Դպրոցի այգում — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ . . . . 6
6. Ճանապարհին — Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ . . . . 7
7. Սանձ պապի խրատը — Հ. ՍԱՀՅԱՆ . . . . 9
8. Խիզախում — Վ. ԱՐԱՄՅԱՆ . . . . . . 10
9. Կայծեր լեռներում — ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ . . . 13
10. Պատանիներին — Գ. ՍԱՐՅԱՆ . . . . . 14
11. Բարեկամության շնորհիվ — ՀՐ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ 15
12. Հավաքույթ գործարանում — Տ. ՇԱՂԳԱՄՅԱՆ . 17
13. Մեզ գրում են . . . . . . . . . 19
14. Երջանիկ աղջիկ — Մ. ԴԻԼԲԱԶԻ . . . . 19
15. Պատկեր — Ժ. ԹՈՐՈՍՅԱՆ . . . . . . 19
16. Հրաշագործ մեքենաների պալատ — Գ. ԲԱԴԱԼՅԱՆ 20
17. Աշուն — Ա. ՂԱԶԻՆՅԱՆ . . . . . . 21
18. Մ. Ի. Կալինին — Փ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . 22
19. Պապն ու թոռը — Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ . . . 24
20. Խոսքի վարպետը — Ա. ԻՆՃԻԿՅԱՆ . . . 25
21. Հայրենիքիս — ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ . . . . 26
22. Երեք զրույց — ՍՏ. ԶՈՐՅԱՆ . . . . . 27
23. Կարդա այս գիրքը — ԱՐՄ. ԹԱՄԱԶՅԱՆ . . 29
24. Տեխնիկայի նորություններ . . . . . 30
25. Հետաքրքիր ժամանց . . . . . . . 31
26. Ադամ Միցկևիչ — Յ. ՇՈՂԵՆՑ . . . . . 33


*Շապիկը՝* ՆԵՄՐՈՒԹԻ




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 13883։ Պատվեր 1150։ Տիրաժ 5000։ Տպագրական 4 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 15/XI 1955 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# ԱԴԱՄ ՄԻՑԿԵՎԻՉ

1855 թվականի աշնանն էր։ Ղրիմի պատերազմի օրերին լեհ մեծ բանաստեղծ Ադամ Միցկևիչը մեկնեց Թյուրքիա, Կոստանդինոպոլիս քաղաքը։ Նա ուզում էր կազմակերպել այնտեղի լեհ հայրենասերներին և տանել պայքարի իր հայրենի Լեհաստանի ազատության և անկախության համար։ Բայց մեծ գրողի ցանկությունը չկատարվեց։ Նա թյուրքական քաղաքում վարակվեց ժանտախտով և նոյեմբերի քսանվեցին վախճանվեց։ Լեհերը բանաստեղծի աճյունը տեղափոխեցին Կրակով քաղաքը և Վավել ամրոցի մոտ հողին հանձնեցին։



Լեհ ժողովուրդը և աշխարհի բոլոր առաջավոր մարդիկ ոգեշնչվել են Ադամ Միցկևիչի հայրենասիրական պոեմներով, բանաստեղծություններով և հրապարակախոսական գործերով։ Բազմաթիվ լեզուներով թարգմանվել են Միցկևիչի ստեղծագործությունները։

Ադամ Միցկևիչը ծնվել է 1798 թվականին։ Ավարտելով բարձրագույն դպրոցը՝ նա զբաղվել է մանկավարժական աշխատանքով։ Դեռ իր պատանեկության տարիներին բանաստեղծը տեսնում է, որ իր հայրենիքը հեծում է տեղական և օտար բռնակալների լծի տակ։ Եվ նա իր առաջին բանաստեղծություններում ժողովրդին կոչում է պայքարի ելնել օտար բռնակալների դեմ։ Միցկևիչն իր նշանավոր «Գովք ջահելության» բանաստեղծության մեջ մարտական կոչ է նետում լեհացիներին՝ փոխել ծանր իրականությունը։

«Գրաժինա» պոեմի թեման Միցկևիչը վերցրել էր Լիտվայի պատմական անցյալից։ Նա դիմում էր ժողովրդին՝ կռվի ելնելու ճորտատիրական կարգերի և ստրկության դեմ։ Նույն պոեմում հեղինակը դատապարտում է հայրենիքի դավաճաններին, որոնք իրենց անձնական շահերը վեր են դասում ամեն ինչից։

1824 թվականից մինչև 1829 թվականը լեհ մեծ բանաստեղծը ճանապարհորդություն է կատարում Ռուսաստանում։ Լինում է Պետերբուրգում, Մոսկվայում, Օդեսայում։ Նա ռուս հանճարեղ բանաստեղծ Պուշկինի մտերիմ բարեկամն էր։ Միցկևիչը մտերմանում է դեկաբրիստների հետ, որոնք պայքարում էին ցարական կարգերի դեմ։ Ռուս առաջավոր մարդկանց շրջանում Միցկևիչը ավելի է կոփվում։ Նա դառնում է ցարիզմի կողմից ստրկացված ժողովուրդների ազատության ջերմ պաշտպան։ 1834 թվականին մեծ բանաստեղծը ստեղծում է «Պան Թադեուշ» մեծ պոեմը։ Դրա մեջ նա ցույց է տալիս Լեհաստանի կալվածատերերի շվայտ կյանքը և աշխատավոր ժողովրդի ազնվությունն ու հոգու վեհությունը։ Միցկևիչը հրաշալի գույներով է պատկերում իր հայրենի երկրի բնության գեղեցկությունները։ Հայրենի երկրից հալածված, նա երկար տարիներ ապրում էր պանդխտության մեջ։ Նա Փարիզի համալսարանում կարդում էր դասախոսություններ և հրատարակում ռևոլյուցիոն «Տրիբունա Լյուդու» թերթը, պայքարում սլավոնական ժողովուրդների ազատության համար և շարունակում էր գրել։ Նրա երկերը թարգմանում և ժողովրդականացնում էին Պուշկինն ու Լերմոնտովը։

Ռուս մեծ քննադատ Վ. Բելինսկին նրան անվանել է աշխարհի մեծ բանաստեղծներից մեկը։

Այժմ լեհ մեծ բանաստեղծի ստեղծագործությունները լայնորեն տարածվել են մեր սովետական հայրենիքում։

Այս տարի նոյեմբերին լրանում է Միցկևիչի մահվան հարյուր տարին։

Ց. ՇՈՂԵՆՑ

